# ԴԵՊՈՒՏԱՏԸ

ԱՐՏԱՇԵՍ ՊՈՂՈՍՅԱՆ

*Գարունն է իջել հայոց աշխարհին՝*
*Ջնծաղիկների քնքուշ թևերով,*
*Դու հպարտ նստած երկաթե քո ձին՝*
*Անցնում ես կանաչ հեռաստաններով։*
*Դու՛ սևահողի կուրծքն ես ակոսում,*
*Որ աշնան ոսկով զուգվի նա էլի.*
*Քո երգը ինչքան զվարթ է հոսում,*
*Գեղեցկանում է գարունն ավելի։*
*Դու նվիրել ես քո ազնիվ հոգին*
*Հայրենի հողին մեր արևակեզ,*
*Դրա համար էլ այս պերճ գարունքին*
*Իր ձայնն է բերում ժողովուրդը քեզ։*

№ 3 1958 թ.
ՄԱՐՏ



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
30-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ



Ա. ՇԱՀԻՆՅԱՆ

Եվ ահա նրանք որոշեցին՝ վաղը, դասերից հետո ուտելիքի պաշար վերցնել ու ճանապարհ ընկնել դեպի գյուղ:

— Հորաքրոջս տուն կգնանք. էնքան կուրախանա որ... Հլա ձմերուկ էլ կուտեցնի:

— Թթու դրա՞ծ,— հարցրեց Առնոն:

— Ի՞նչ թթու դրած. իսկական, իսկական ձմերուկ:

— Բա ձմեռը թարմ ձմերուկ կլինի՞...

Սկիզբը տես «Պիոներ» № 2, 1958 թ.

* * *

Ինչպես որոշեցին, այնպես էլ արին:

Հաջորդ օրը, դասերից հետո Առնոն ներքնահարկ իջավ: Փայտերի տակից մեծ դժվարությամբ հանեց խորովածի շամփուրներից մեկը: Ծայրը կռացրեց և, որպեսզի մայրը չնկատեր, խնամքով թաղեց բակում գտնվող ձյան թմբի մեջ:

Երբ ամեն ինչ պատրաստ էր, նա անաղմուկ հագավ չմուշկավոր կոշիկները և գաղտնի դուրս ծլկեց:

Փողոցի անկյունում՝ բաթանե պարկը մեջքին, կեռ երկաթալարը ձեռքին, սպասում էր Վաչեն:

Երբ Առնոն դուրս եկավ դիմացի շենքի ետևից, Վաչեն ձայն տվեց.

— Շո՛ւտ արա, ուշանում ենք...

Եվ, որպեսզի ծանոթներից ոչ մեկը չհանդիպեր, տղաները որոշեցին հեռանալ իրենց փողոցից:

Հեռվից մի մարդատար մեքենա էր գալիս:

Նրանք կանգ առան:

— Պատրաստվի՛ր,— փորձված մարդու տոնով զգուշացրեց Վաչեն,— միայն տես, վրա չպրծնես, թող մի քիչ հեռանա, նոր...

— Լավ,— համաձայնվեց Առնոն, ու նրանք սկսեցին սահելով վեր բարձրանալ, մինչև մեքենան կմոտենար:

Երբ հարմար պահը մոտեցավ, տղաները՝ ոտքերը գորտի նման թափահարելով, սլացան առաջ:

Դեռ նոր էին իրենց ձեռքերի կեռ երկաթալարով կառչել մեքենայի ետնամասում ամրացված պահեստային անիվից, երբ մեքենան կտրուկ արգելակվեց:

— Առնո, ճղի՛ր,— ամբողջ կոկորդով բղավեց Վաչեն:

Շոֆերը դուրս թռավ մեքենայից: Նա հայհոյանքի մի քանի փայլուն նմուշներ շպրտեց փախչող տղաների ետևից, նստեց մեքենան ու շարունակեց իր ճանապարհը::

Տղաները հանկարծակիի եկած, կանգնել էին մայթի եզրին ու չգիտեին ինչ անել:

— Վաչե, ուզում ես ետ դառնանք, հ՞ը...— ընկրճված կրկնեց Առնոն:

— Ի՛հ, վախկոտ...

Առնոն լուռ էր:




— Արի, էս անգամ բեռնատար մեքենայի պոչից կպնենք, լա՞վ...

Առնոն ուսերը վեր քաշեց։

Ահա և բեռնատար մեքենան։ Սլանում են տղաները՝ կառչած նրա ետևից։ Ամեն խաչմերուկում, երբ մեքենան կանգ էր առնում, տղաները մի պահ անջատվում էին նրանից։ Իսկ երբ մեքենան շարժվում էր առաջ, նրանք վերստին գործի էին դնում իրենց կեռ երկաթալարերը։

Այսպես, նրանք անցան մի քանի փողոց։

Վերջապես, մեքենան մի մեծ պտույտ կատարեց և, այն է, պատրաստվում էր բարձրանալ Նորքի սարալանջով, երբ հանկարծ...

... Այն ճիչը, որն ավելի սարսափելի էր, քան կատարված դեպքը, ստիպեց անցորդներին մի պահ քարանալ տեղերում։

— Ընկա՜վ, մարդ ընկավ մեքենայի տակ,— ճչացին այս ու այն կողմից և վազեցին դեպքի վայրը։ Ձյունածածկ փողոցը սևացավ մարդկանցով։

Մի ծեր կին, տեսնելով գետնին փռված ուշաթափ տղային, լացակումած ձայնով ասաց.

— Վա՜յ, մորդ աչքերը քոռանան, բալա...

Շոֆերը, որ արդեն ցած էր իջել մեքենայից, ձեռքերի վրա առավ ուշաթափ տղային, որի աջ ոտքից արյուն էր հոսում։ Նա դարձավ դեպի հավաքվածները և դողդողացող ձայնով ասաց.

— Բա ես մեղք ունե՞մ, ա՛յ ժողովուրդ։ Մի սրա ոտքերի չմուշկներին նայեք... Ախր, ո՞վ է սրան ասել մեքենայի պոչից կպչի։

* * *

Ահա նա։ Փախչում է դեպքի վայրից՝ սարսափած ու դժգույն։ Չմուշկները խանգարում են իրեն։ Ասես, հսկա կշռաքարեր են կապել ոտքերին։ Նա մոտեցավ մայթի եզրին, խփեց-պոկեց ոտքերից այդ ծանրությունները ու նետվեց առաջ։

Վազում է նա փողոցներով՝ երկու ձեռքով գլուխը բռնած։ Ձեռքերը դողում են, ոտքերը երերվում... և թվում է նրան, ուր որ է, վայր կընկնի։ Բայց ինչ-որ անբացատրելի ուժ պահում է նրան ու մղում առաջ։ Անցորդները կանգնում, նայում են նրա ետևից ու զարմացած վեր են քաշում ուսերը... Բայց վազում է նա առանց շուրջը նայելու։ Վազում է, ինքն էլ չգիտի, թե ուր։ Վազում է հևիհև, դեմքը այլայլված, սարսափից չռված աչքերով՝ ընկերոջ ա՛ղեկտուր ճիչը ականջներում։

Մայթի եզրին ընկած էին մի զույգ չմուշկներ։ Վաչեի չմուշկներն էին դրանք։

* * *

Առնոյի ոտքը կոտրվելու լուրը կայծակի արագությամբ տարածվեց ամբողջ դպրոցում։ Աշակերտները, ուսուցիչները, բոլորը խոսում էին այդ դեպքի մասին։

Իսկ նրա դասընկերները, որոնց ծանոթ էր Առնոյի բնավորությունը, տխրում էին ու լռում։

Սկսվեցին ձմեռային արձակուրդները։ Դպրոցի ցանկապատված բակը միշտ էլ լեփ-լեցուն էր աշակերտներով։

Բակի ծայրին գտնվող հայելանման, հարթ ու փայլուն սահադաշտի վրա չմշկում էին աշակերտները։ Նրանք սահում էին զույգ-զույգ, հետո՝ մեկ-մեկ, ապա՝ ամբողջ խմբով։

Սահադաշտի մեջտեղում, չմուշկների վրա բարդ վարժություններ էր ցույց տալիս մարզիչը։ Իսկ այն աշակերտները, որոնք դեռ նոր էին սովորել չմշկել, դաշտի շուրջը կանգնած՝ կլանված նայում էին նրա ամեն մի շարժումին։

Անցան օրեր։ Վերջացավ ձմեռային արձակուրդը։

Մի անգամ, առավոտը շուտ, երբ զանգը դեռ չէր տվել, աղմուկով դասարան ընկավ Գագիկը և ոգևորված ասաց.

— Երեխե՛ք, երեկ երեկոյան մի հետաքրքիր բան անցավ մտքովս։

Տղաներն ու աղջիկները հետաքրքրված նայեցին Գագիկին։

— Մենք արդեն բավականին վարժվել ենք, չմուշկներով լավ ենք սահում, ճիշտ է, չէ՞,— շարունակեց Գագիկը,— դեռ ավելին, պարում ենք երաժշտության տակ։ Ի՞նչ կլինի, եթե մեր ուժերով մի ներկայացում կազմակերպենք հենց սառույցի վրա։

— Ա՜խ, ինչ լավ կլինի,— ոգևորված բացականչեց Համլիկը,— իսկ մեր ներկայացումն էլ կանվանենք՝ «Թատրոնը սառույցի վրա»։

Տղաներն ու աղջիկները ուրախությունից ոտքերով այնպես դմդմացրին դասարանի հատակը, որ քիչ մնաց լուսամուտի ապակիները ցած թափվեին։





Երբ այդ մասին հայտնեցին մարզիչին, նա ժպտալով ասաց.

—Ա՛յ թե բան եք մտածել, հա՜... Չմուշկներով ներկայացում... Եվ ո՞ւմ մտքով է անցել այդ հրաշալի նախաձեռնությունը...

3

Ձմեռային խաղաղ երեկոն փռվել էր քաղաքի վրա։

Երբ Առնոն մոր հետ դպրոց հասավ, բակում արդեն բավականին բազմություն էր հավաքվել։ Դպրոցը պարսպող երկաթե ճաղերից կախվել էին մոտիկ բակերից եկած երեխաները և հետաքրքրությամբ դիտում էին ներսում կատարվող իրարանցումը։

Երկու հսկա լուսարձակներ կուրացուցիչ լույսով լուսավորում էին դպրոցի բակը։

Բակի երկու կողմերում գտնվող բարձրախոսներից դուրս էին ծորում վալսի կախարդիչ հնչյունները։

Մեղմիկ ձյուն էր գալիս։

Առնոն՝ հենակները թևատակին, բակ մտավ։ Տղաներից մեկը բացականչեց.

— Տղե՛րք, Առնո՜ն. Առնոն էլ եկավ։

Այդ ձայնի վրա բոլորն էլ շուռ եկան։ Առնոն նկատեց իր վրա բևեռված բազմաթիվ հայացքներ, ինչ-որ անհասկանալի զգացում համակեց նրան։ Նրա մեջ ցանկություն առաջացավ փախչել, թաքնվել այդ կարեկցող և միևնույն ժամանակ հանդիմանող հայացքներից։

Հանկարծ երկու անծանոթ մարդ փոխեցին լուսարձակների ուղղությունը՝ բակի մի մասը թողնելով կիսախավարի մեջ։

— Կինոյի համար են նկարահանելու,—ասաց Առնոյի կողքին կանգնած մի աղջիկ՝ մատնացույց անելով սահադաշտի առջև գտնվող երկու հսկա ապարատները։

Սահադաշտը ողողվեց էլեկտրական լույսերով։ Սառցե հրապարակի երկու կողմերում դրված էին ֆաներայից պատրաստված մի քանի կոճղեր և երկու մեծ եղևնի, որոնք բոլորովին չէին տարբերվում իսկականից։

Մի քանի րոպե հետո, չմուշկների վրա սահադաշտ դուրս եկավ տարօրինակ զգեստներ հագած մի ծերունի։

Երաժշտությունը սկսվեց։

— Մուկո՜ւչը, Մուկո՜ւչը,—այս ու այն կողմից բղավեցին երեխաները։

Եվ ծերունին սկսեց...

... Ահա չմուշկների վրա հանդարտ սահելով, դուրս եկավ մի շալավոր աղջիկ՝ փոքրիկ զամբյուղը ձեռքին։

«Մի՞թե Համիկն է»։ Առնոն չհավատաց իր աչքերին։

Աղջիկը մոլորված՝ պտույտներ էր կատարում տեղում ու լալով գանգատվում եղևնիներին, թե ինչպես է խորթ մայրը նրան անտառ ուղարկել՝ ձմեռ օրով մորի գտնելու։

Հանկարծ ուժեղ ճայթյուններ են լսվում։ Կա-





Նկ. Ն. ՔՈԹԱՆՋՅԱՆԻ

տաղի սուլում է քամին։ Աղջիկը վախեցած խուխտ է սահում։ Ուսերին ամրացված թռչունի հսկա թևերը թափահարելով, եղևնու ետևից հայտնվում է անտառի ոգին։ «Ես լսեցի քո լացը, ո՜վ դժբախտ աղջիկ», ասում է նա։

— Մամա, Գագիկն է, մեր Գագիկը։ Տես ինչ էլ մեծ թևեր ունի,—ուրախ ասաց մի փոքրիկ աղջիկ, Առնոյի կողքին կանգնած կնոջ թևքից քաշելով։

Կինը գոհունակ ժպտաց։

Առնոյի սիրտը տակն ու վրա էր լինում: Ինչ-որ բան քերում էր կոկորդը։ Նա մերթ գողունի նայում էր մորը, մերթ՝ շրջապատի մարդկանց ու, թվում էր՝ ոտքերը հրաժարվում են իրենց պարտականությունից։ «Երանի մայրս եկած չլիներ», անհանգիստ մտածում էր նա։

... Անտառի ոգին խոստանում է օգնել մոլորված աղջկան՝ մորի գտնել նրա համար։ Նա կանչում է անտառի փոքրիկ փերիներին։

Ուրախ երգելով սահադաշտ են մտնում թևավոր փոքրիկ փերիները։ Նրանք գեղեցիկ շարժումներով, զույգ-զույգ պտտվում են շալավոր աղջկա շուրջը։ Նրա ձեռքից վերցնում են զամբյուղը և թևիկները թափահարելով, գնում են մորի բերելու...

Առնոն չէր հիշում, թե որքան ժամանակ էր անցել, երբ հանկարծ ծափերի որոտը սթափեցրեց նրան։

Ներկայացումը վերջացել էր։

Քիչ անց, ուրախ աղմուկով շրջապատեցին Առնոյին նրա ընկերները։

— Առնո՛, ինչպե՞ս էր, հավանեցի՞ր,—հրճվանքով հարցրեց Գագիկը։

Առնոն պատասխանի փոխարեն կախեց գլուխը։ Նրա աչքերը արցունքոտվեցին։ Ցրտի՞ց էր, թե... Ընկերներից ոչ մեկը չնկատեց այդ։ Միայն մայրն էր, որ նայեց որդու թաց աչքերին և հասկացավ, թե ինչ արցունքներ էին դրանք։



# Խուլ Օհանը

(Ավանդություն)

ԷԴ. ԱՎԱԳՅԱՆ

Ժամանակով… կար ու չկար,
Մեր հին գյուղում՝ մի տատի կար։
Էդ տատիկը մի թոռ ուներ,
Էդ թոռնիկն էլ ականջ չուներ.
Ծեծում էր նա կատվին, շանը
Ու չէր մնում երբեք տանը։
Իսկ թե մնար՝ վա՜յ էն օրին,
Կրակ-ցավ էր նա բոլորին…
Ամբողջ օրը խաղում, վազում,
Ծեր տատիկին չէր էլ լսում։
Թե տատն ասեր՝ Օհան, ջուր բեր,
Նա կգնար, քար կբերեր…
Թե որ ասեր՝ գնա բոստան,
Նա կթռչեր կտուրը տան,
Վար կթափեր խոտ ու աթար
Ու կկանչեր՝ ջո՜ւտ արի տար…
Դե էդպեսին, էլ ի՞նչ կանես,
Անուն դրին՝ Խուլ Օհանես…

Ու մի օր էլ տատիկը ծեր՝
Թողած թե՛ տուն, թե՛ տան գործեր,
Հիվանդացավ, պառկեց-մնաց՝
Աչքը՝ մշուշ, սիրտը՝ սևցած,
Ամբողջ հոգսը տարվա կեսին
Մնաց միայն Օհանեսին։

Բայց գործը ո՞ւր, Օհանը ո՞ւր,
Եկավ, բարդվեց ինչ որ բլուր,
Եվ ամեն օր մութ ու լուսին
Տատն էր կանչում Օհանեսին.
— Օհա՜ն, վե՛ր կաց, ճաշ է դարձել,
Ի՞նչ ես էլի քնով անցել։
Պետք է պատը սվաղես տան,
Պետք է ելնես, գնաս բոստան,
Պետք է հասնես կալ ու կալսին,
Ա՜խ, ամիսը անցավ ամսին։

Իսկ Օհանը մեջքին պառկած՝
— Քիչ սպասի՛ր, քիչ հլա կա՛ց։
Մի քիչ քնեմ, քունս առնեմ,
Վեր կկենամ, բահը կառնեմ,
Գործս կանեմ կրակի պես.
Տատի, մի՞թե ինձ չգիտես…
Ու քնում էր մինչև կեսօր։
— Զգնացի՞ր էլի էսօր։
Օհա՜ն, վե՛ր կաց.— տատն էր կանչում.

Տատն էր կանչում ու աղաչում։
— Ի՞նչ ես ասում, ա՜խ, էս մթա՞ն,
Չէ՛, տատի ջան, էգուց կերթամ…

Օրեր եկան, օրեր անցան,
Շաբաթները ամիս դարձան,
Ու մի օր էլ տատը հոգնած,
Անիծելով նրան ասաց.
— Ա՜յ, ոչ ու փուչ, ա՜յ, ցավ ուտես,
Հերիք չեղա՞վ կողքիդ պառկես.
Մարդիկ, մի տես, ինչ են բանում,
Անբան հավքն էլ գործ է անում,
Ա՜յ, հավք դառնաս, խուլ Օհանես,
Որ իմ հոգին էլ չհանես.—
Ասաց տատը ու մեկ էլ ի՜նչ,
Հենց անկյունից լսվեց մի ճիչ,
Էդ Օհանն էր, որ հավք դառավ,
Որ հավք դառավ ու դուրս թռավ,
Թռավ-գնաց դաշտերը մեր,
Դաշտերը մեր՝ անծիր, անծեր…

Բայց խուլ մնաց, թեկուզ թռչուն,
Եվ ո՞վ նրան չի ճանաչում,
Խլահավ էլ անուն դրին
Այդ հավք դարձած խուլ Օհանին։

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ






# ՔԵՌԻ ՏԵԼԵՄԱԿԻ ՀՈՎԱՆՈՑԸ

Հ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

*Մի ժամանակ թաղի ամենահռչակավոր տղան Արտակն էր. բայց երբ Խոստիկն ու Մակարը ընկերացան, և սկսվեցին նրանց արկածները, Արտակին բոլորը մոռացան։*

*Դրա համար էլ Արտակը որոշեց մի այնպիսի բան մտածել, որ Խոստիկն ու Մակարը չկարողանային անել։*

*Այդ օրն էլ, Խոստիկից քիչ հեռու, ծառի տակ նստած՝ նա նույն բանի մասին էր մտածում, երբ քեռի Տելեմակը՝ իր չափազանց մեծ հովանոցը ձեռքին, անցավ բակով և մտավ Խոստիկենց տունը։*

*Արտակի գլխում մի միտք փայլատակեց. նա անսպասելիորեն ցատկեց տեղից ու, դառնալով Խոստիկին, ինքնավստահ կերպով ասաց.*

*— Մակարը չի կարող քեռի Տելեմակի հովանոցով դպրոցի կտուրից թռչել։*

*Արտակը հաղթականորեն նայեց Խոստիկին։*

*Նա վերջապես կարողացել էր գտնել իր ուզածը։ Խոստիկն ու Մակարը երբեք այդպիսի մեծ ռիսկ չէին անի և կխայտառակվեին։*

*— Կարող է,— առանց երկար մտածելու, պատասխանեց Խոստիկը։*

*— Չի կարող,— կրկնեց Արտակը,— ես բոլորին էլ կասեմ, որ չի կարող։*

*— Կարող է,— պնդեց Խոստիկը։*

*— Կտեսնենք։*

*— Կտեսնենք։*

2.

*Երկար Մակարը՝ բանից անտեղյակ, մածնի ամանն ու մակարոնի փաթեթը ձեռքին, վերադառնում էր խանութից։ Դեռ տեղ չհասած, բակի երեխաները վազեցին նրան ընդառաջ։*

*— Շո՛ւտ արա, Մակար։*

*Մակարը զգաց, որ մի արտասովոր բան է տեղի ունեցել և, որ ինքը օրվա հերոսն է։ Նա չուզեց բանից անտեղյակ երևալ.*

*— Էլ ո՞նց շուտ անեմ, չեք տեսնո՞ւմ՝ ինչ արագ եմ ման գալիս,— ծանր քայլերն ավելի մեծացնելով, ասաց նա։*

*— Ե՞րբ ես թռչելու, Մակար։*

*— Տեսնենք,— նորից իր անտեղյակությունը ճարպկորեն թաքցնելով, ասաց Մակարը։*

*— Չե՞ս վախենում, Մակար։*

*— Չէ, չեմ վախենում։*

*— Ճի՞շտ է, որ դպրոցի կտուրից ես թռչելու։*

*— Ի՞նչ...— զարմացավ Մակարը և սարսափած նայեց դպրոցի կողմը։*

*Դպրոցը երեք հարկ ուներ։*

*Այդ միջոցին նրան մոտեցավ Խոստիկը և կամացուկ ասաց.*

*— Դրանք տուն տար ու շուտ արի։*

*Երբ Մակարը վերադարձավ, Խոստիկն ասաց նրան.*

*— Քեռի Տելեմակը մեզ մոտ է, միասին ներս կգնանք, դու նրա հովանոցը կվերցնես ու դուրս կգաս։*

*— Լավ,— համաձայնեց Մակարը։ Նա գիտեր, որ Խոստիկն անտեղի ոչինչ չէր անի, անպայման մի հետաքրքիր բան էր մտածել։*





Նկ. Գր. Խանջյանի

Խոստիկի մտահղացումներից ոգևորված՝ մի անգամ, ամիսներ առաջ Մակարն էլ մի հետաքրքիր միտք էր հղացել. ուզել էր Խոստիկին ասել, բայց չէր համարձակվել. «Նախ փորձեմ», ու փորձել էր։ Պոկել էր իր դասագրքերի կազմերը... Նա մտադրվել էր բոլոր դասագրքերը իրար միացնել, կազմել և ստեղծել դասագրքերի մի հսկա հատոր... Բայց կազմերը պատռելուց հետո էր միայն գլխի ընկել, որ գրքերը տարբեր մեծության են և, հնարավոր չէ մի հատոր կազմել։

3.

Քիչ անց Մակարը՝ քեռի Տելեմակի հովանոցը ձեռքին, սպասում էր բակի մի անկյունում։ Երևաց Խոստիկը. նա Մակարի ձեռքից վերցրեց հովանոցը, ստուգեց և ասաց.

— Հիմա այս հովանոցով դու կթռչես դպրոցի կտուրից... Արտակը ասում էր, որ բան դուրս չի գա. հիմա կտեսնի՝ դուրս կգա, թե չէ։

— Ելի՞ Արտակը խառնվեց մեր գործերին... Հիմա կտեսնի. իհա՛րկե, կթռչեմ... Մեր դասարանի պատուհանից կթռչեմ, չէ՞... Խոստիկ։

— Ի՞նչ... մեր դասարանը առաջին հարկում է... Այդտեղից առանց հովանոցի էլ կարելի է թռչել։ Դու կտուրից պիտի թռչես... Թե վախենում ես, ես կթռչեմ...

— Չէ, Խոստիկ... ես կթռչեմ... միայն ինչո՞ւ այդքան բարձր տեղից... ես վախենում եմ ընկնեմ ցած, ու ծունկս բերծվի. հետո չեմ կարողանա դասերս պարապել։

— Մակա՛ր,— սրտնեղած ասաց Խոստիկը,— ես քեզ ինչ որ ասում եմ, դու հակաճառում ես... իսկ հետո էլ համաձայնվում. եթե այդպես է, էլ ինչո՞ւ ես հակաճառում։

— Ճիշտ ես ասում, Խոստիկ,— հաստատեց Մակարը։

4.

Դեպի դպրոց էին գնում բակի բոլոր երեխաները։ Նրանք տեսնելու էին իրենց կյանքի ամենահետաքրքիր դեպքը։ Առջևից գնում էր Պստիկ Խոստիկը՝ քեռի Տելեմակի կիսաբաց հովանոցը սուսերի նման առաջ պարզած, նրա ետևից գալիս էր Երկար Մակարը՝ սպրդնած, բայց գլուխը բարձր և խրոխտ խմբից առանձնացած, արհամարհական ժպիտը դեմքին, գալիս էր և Արտակը։ Նա չէր ուզում շատ աչքի ընկնել։ Հետո ո՞վ գիտեր, ինչեր կարող էին պատահել։ Երբ խումբը հասավ դպրոց, Խոստիկն ու Մակարը ներս մտան, իսկ երեխաները անցան բակի կողմը և հայացքները հառեցին կտուրին։

Երբ Խոստիկն ու Մակարը ոտք դրին կտուրին, սարսափեցին։ Բակից դպրոցի բարձրությունը բոլորովին էլ այնպես չէր երևում, ինչպես վերևից... Կարծես դպրոցը մի տասն անգամ ավելի էր բարձրացել։

— Ավելի լավ է իջնենք,— ասաց Խոստիկը։

Բայց երբ նրանք ցած նայեցին և տեսան բակում հավաքված ու դեպի վեր նայող երեխաներին և հատկապես Արտակին, նորից տատանվեցին։

Ամոթ էր, եթե Մակարը չթռչեր։

— Տուր ինձ,— ասաց Մակարը։



Ապա վերցնելով հովանոցը, արագ վազեց դեպի կտուրի ծայրը և... թռավ։

Խոստիկը շատ վախեցավ։ Ի՞նչ տեղի ունեցավ։ Նա արագ իջավ աստիճաններով, այնքան էր վախեցել, որ չհամարձակվեց բակի կողմը գնալ և իմանալ՝ ինչ էր պատահել Երկարի հետ։ Նա վազեց տան կողմը։ Ամեն ինչ կարելի էր իմանալ քեռի Տելեմակից։

Երբ նա տուն մտավ, քեռի Տելեմակը տնեցիներին պատմում էր ինչ-որ պոչավոր աստղի մասին։ Դա պետք է երևար մի քանի օրից, կես գիշերից չորս րոպե անց։

Խոստիկը շնչասպառ ներս ընկավ և դռների միջից հարցրեց.

— Տելեմակ քեռի... եթե... պարաշյուտով մեկը ցած թռչի մեր դպրոցի կտուրից, ի՞նչ կլինի։

— Կարելի է... — Խոստիկի անակնկալ հայտնությունից և հարցումից բոլորովին էլ չզարմանալով, պատասխանեց քեռի Տելեմակը։ — Չնայած տարածությունը կարճ է, բայց կարելի է։

— Իսկ եթե մեկը դպրոցի կտուրից թռչի հովանոցո՞վ, — բուն հարցին ավելի մոտենալով, շարունակեց Խոստիկը։

— Հովանոցո՞վ... հը՛մ... հովանոցի դիմադրողականությունը թույլ է, չի կարելի։ Հետո հովանոցը օդի ճնշմանը չի դիմանա, կպատռվի...

— Իսկ եթե Մակարը թռչի դպրոցի կտուրից ձեր հովանոցո՞վ, — թուքը կուլ տալով. վերջապես ասաց Խոստիկը։

— Միևնույն է... թեկուզ Մակարը, թեկուզ իմ հովանոցով... Դա նույնն է, եթե Մակարը դպրոցի կտուրից թռչի առանց հովանոցի... մի փայտի կտոր ձեռքին։ — Հետո պրոֆեսոր Տելեմակը հանկարծ սթափվեց, — չլինի՞ արդեն թռել է։

— Թռե՜լ է... — հուսահատ բացականչեց Պատիկը։

Տնեցիները դուրս թափվեցին։

5.

Մակարին գտնելու բոլոր հույսերը ապարդյուն անցան։

Բոլոր երեխաներն էլ միաբերան ասում էին, որ Մակարը հովանոցը ձեռքին ցատկել է դպրոցի կտուրից ուղիղ թթենիների կողմը։ Տեսել էին ինչպես թռիչքի հենց սկզբին պոկվել և մի կողմ էր թռել հովանոցի ամբողջ վերնամասը, և Մակարի ձեռքին մնացել էր հովանոցի կոթը... Դրանից հետո երեխաները վախից փակել էին իրենց աչքերը։ Քիչ անց, երբ բաց էին արել, տեսել էին, որ Մակարը չկա։

Բարձրացել էին թթենիների մեջ թաղված Արտակենց տան կտուրը, գտել թթենու մի քանի ջարդված ճյուղեր... Բայց Մակարը... չկար ու չկար։ Երեխաներից շատերը համոզված էին, որ

Մակարը ոչ թե՜ իջնել, այլ, ընդհակառակը, դեպի վեր է բարձրացել։

Պրոֆեսոր Տելեմակը հուզված մի քանի անգամ անց ու դարձ արեց փարպետ Սեդրակի տան մոտով։ Ապա նա դարձավ դեպի տանտերը, և ասաց.

— Այնպիսի պղմուկ կամ ձայն, որ նման լիներ, ասենք... եթե ըմպցքի տաշտի վրա մի փայտի կըտոր ընկներ... ձեր ականջին չհասա՞վ։

— Ո՛չ, — ասաց փարպետ Սեդրակը, — ես զբաղված էի խոհանոցի փառարանը վառելով։

— Վառարա՞ն, — ընդհատեց նրան պրոֆեսոր Տելեմակը,—այդ դեպքում ինչո՞ւ եք հանել վառարանի խողովակները։

— Մաքրելու... որովհետև վառարանը չի վառվում։ Բայց...

— Բայց խողովակները մաքո՞ւր են...

— Այո, — զարմացած ասաց փարպետ Սեդրակը։

— Էվրիկա՜, — բացականչեց պրոֆեսոր Տելեմակը։ — Հանե՛լ Մակարին ծխնելույզից։

Տղաները բարձրացան փարպետ Սեդրակենց խոհանոցի կտուրը և ծխնելույզի միջից դուրս քաշեցին սևացած Մակարին։

— Ինձ ոչինչ չի պատահել. միայն թե շատ շոգ էր, կարծես մեկը փորձում էր ինձ տապակել։

Խոստիկի ու Մակարի հուզակը ավելի տարածվեց, մանավանդ, որ քեռի Տելեմակը խոստացավ նրանց իսկական պարաշյուտով թռցնել։

Բայց երեկոյան քեռի Տելեմակը մի թեթև ծըգեց Խոստիկի ձախ ականջը։



# ՄԵՐ ԱՅԳԻՆ

Ծառի ճյուղերն են հավաքել
Մանուկները մեր մեծ բակի,
Փափուկ հողում կարգով շարել
Եվ պատրաստել դալար այգի։
Առու էլ են փորել արդեն,
Որ ծառերը չթառամեն։
Պաշտպանում է մեր նոր այգին
Քաջ Ալիկը՝ փայտը ձեռքին։
—Բոլորից շատ ծառի ճյուղեր
Ես եմ բերել պարտեզից մեր,
Բացել եմ այս առուն բարակ,
Իսկ Ալիկն է դարձել պահակ,—
Լաց լինելով ասաց Մոսին
Ու ցանկացավ քանդել այգին։
Բայց մենք կանգնած ծառերի մոտ՝
Խոժոռադեմ ու զայրացկոտ,
Պատնեշեցինք ճամփան նրա,
Չթողեցինք, որ մոտենա,
Նույնիսկ, այգու ցանկապատին,
Ու վախեցավ, փախավ Մոսին։
Այդ օրվանից էլ Մոսին չար
Չի մոտենում այգուն դալար։

# ՊԵՅԶԱԺ

Այնպես ճերմակ, քնքո՜ւշ այնքան,
Առավոտը ցողաշաղախ,
Որպես ցնորք մի դյութական,
Արծաթ սարից իջավ խաղաղ։
Հնչեց շվին կանաչ հանդում,
Ու բուրեցին ծաղիկ ու ծառ,
Եվ երկնքի կապույտ ծոցում
Վառվեց խարույկ մի բոցավառ։

ԷԴՄՈՆԴ ԳԵՎՈՐԳՅԱՆ

# ՔՅԱՀՐԵԶՆԵՐՈՒՄ

Վ. ԱՆԱՆՅԱՆ

Նկ. Դ. ՍԱՐԳՍՅԱՆԻ

Արտաշատի շրջանի Անաստասավան գյուղի վերև, ուր վերջանում է հարթությունն, ու ընկըլվում են լեռան փեշերը, հողն այնպես խճոտ է ու պապակ, որ մայիսի վերջերից արդեն կանաչը դեղնում է: Եվ չնայած դրան, այդ տոչոր վայրում խաղողի փարթամ այգիներ կան, որոնց թմբերի միջև դեռ հեռվից առկայծում է լեռնային զուլալ ջուրը: Որտեղի՞ց ջուրն այգիներում. կիսաանապատային այդ վայրերում ոչ գետակ կա, ոչ աղբյուր: Լեռներից ցած իջնող հեղեղատի ներքին ծայրից, մի թաքուն տեղ ջուրը դուրս է հորդում երկրի ընդերքից ու մտնում այգիները. այդ հրաշք-ջուրն է կյանք տվել անապատին:

Բայց ինչպե՞ս, որտեղի՞ց է լույս աշխարհ ընկել այդ ջուրը:

— Գնանք քյահրեզները, մոտիկից կտեսնեք, թե ինչ ջուր է դա: Համ էլ աղավնիներ կըխփեք, քյահրեզներում աղավնի շատ կա, — առաջարկեց մեզ կոլտնտեսության որսորդ-այգեգործներից մեկը և, իր հրացանը վերցընելով, առաջնորդեց մեզ դեպի իր ասած «քյահրեզները»:

Հեղեղատի ողջ երկայնքով շարված թմբեր են երևում: Դեռ հեռվից հասկացվում է, որ դրանք կազմված են այն հող ու խճից, որ հին ժամանակներում մարդիկ քանդել-դուրս են տվել երկրի ընդերքից:

Հին դամբանաբլուրներ հիշեցնող այդ թմբերը լուռ ու մունջ պահակների նման շղթա են տըրվել մինչև լեռան ստորոտը և անհետանում են հեղեղատի ոլորանի ետևում:



Դա «քյահրեզների» արտաքինն է: Իսկ ներքի՞նը: Մոտեցանք հինավուրց դամբանաբլրի նըմանվող մի կույտի և բարձրացանք նրա գագաթը: Վերջինս հրաբխի խառնարանի նման մի անցք ուներ, մռայլ մի ճագար, որ իջնում էր երկրի մթին խորքը: Օրը շոգ էր, մենք քրտնած էինք և, երբ կանգ առանք «խառնարանի» եզրին, երկրի ընդերքից եկող սառը օդը դիպավ մեր դեմքերին և զովացրեց մեզ: Ներքևում աղջամուղջի մեջ քչփըչում էր անտեսանելի ջուրը. այդ նրա շունչն էր հասնում մեր դեմքերին:

— Հիմա իմացա՞ք ինչ բան է քյահրեզը, — հարցրեց այգեգործը, — տեսնո՞ւմ եք թմբերը, դըրանք բոլորը ջրհորներ են, որ գետնի տակով կապված են իրար հետ ու բոլոր հորերի ջրերը միանալով՝ դուրս են գալիս ներքևում ու ծառայում մեզ:

Հորի եզրին կանգնած՝ մըտածում էինք, թե որքան մարդկային ջանքեր են գործադրվել ստորերկրյա այդ ահռելի թունելները, խորշերն ու անցքերը փորելու համար: Միայն բրիչով ու քլունգով, տասնամյակներ շարունակ փորելով՝ մեր պապերը գտել, իրար են միացրել ստորերկրյա ջրերի բարակ երակները և նրանց լույս աշխարհ հանելով, անապատը վերածել ծաղկած այգու: Ի՜նչ տոկուն է մեր ժողովուրդը:

— Ջուրը կյանք է, առանց ջրի մեր գյուղի տեղը փուշ ու տատասկ կլիներ... Ինչքա՜ն գըլուխ է ջարդվել, ինչքա՜ն մարդ է սպանվել այս ջրի համար, — մտախոհ, կարծես ինքն իրեն ասում է այգեպանը: — Տե՛ս, աղավնիները մտան «քյահրեզները»... իր մտքերից սթափվեց նա:

Իրոք, բազեից հալածված մի խումբ վայրի աղավնիներ սըրընթաց անցան և անհետացան թմբերից մեկում, կարծես գետնի տակն անցան: Ասենք՝ իրոք գետնի տակն էին անցել: Երբ մենք կանգ առանք այդ թըմբերի կատարին և նրա բաց երախով ցած նայեցինք, աղջամուղջի մեջ մոխրագույն կետեր նըշմարվեցին: Պատերի ելուստներին նստած, չար աչքից հեռու հանգստանում էին վայրի աղավնիները: Ո՛չ շոգն էր նրանց հասնում, — քանի որ նրանց ներքևում հոսում էր ստորերկըրյա առուն, — ո՛չ բազեն ու որսորդը, — քանի որ հին ժամանակ մարդիկ ջուր փնտրելով, թաքըստոցներ ու անմատչելի ամրոցներ էին կառուցել այդ թռչունների համար:

Անցանք հաջորդ բլրակը և, երբ ցած նայեցինք, ստորերկրյա թունելից թրթռալով դուրս թափվեցին այնտեղ թաքնված աղավնիներն ու մեր դեմքերի առաջ օդն ալեկոծելով՝ թռան-կորան հեռավոր թմբերի «ճագարներում»:

Մենք չկրակեցինք նրանց վըրա: Չկրակեցինք՝ գուցե ունկընդրելով մեր ներքին ձայնին, որն ասում էր՝ մարդն է կառուցել դրանց թաքստոցները, մարդուն են ապավինել այդ անմեղ թռչունները...




(Անգլերենից)

Նկ. Հ. ԽՈՒԴԱՎԵՐԴՅԱՆԻ

*Երեք քաջ որսորդ անվախ ու արի*
*Որս էին անում անտառի խորքում.*
*Իսկ նրանց գլխին լուսնկան բարի*
*Ցոլում, ժպտում էր կապույտ երկնքում:*

*— Տղե՛րք, մի նայե՛ք, լուսինն է լողում,—*
*Ձայնեց որսորդը հոգնած ու մոլոր,*
*Մյուսը ասաց՝ ափսե՞ է շողում,*
*Երրորդը գոռաց՝ գաթա՞ է կլոր:*

*Երեք քաջ որսորդ անվեհեր ու քաջ*
*Թափառում էին քաղցած ու հոգնած,*
*Իսկ երեկոյան, հենց նրանց դիմաց,*
*Հանկարծ մի սիրուն եղնիկ երևաց:*

*Մեկն ասաց.— Տեսե՛ք, եղնիկն է ծածուկ,*
*Վախեցած շրջում կանաչ թփուտում:*
*Երկրորդը ասաց՝ կո՞վ է արածում,*
*Երրորդը կանչեց՝ բո՞ւն է, ծառի բո՞ւն:*

*Երեք քաջ որսորդ անվախ ու արի*
*Լուռ նստել էին մի մեծ ծառի տակ,*
*Հանկարծ լսեցին, որ մեկն այդ պահին*
*Խաղում է՝ պոչը շարժելով արագ:*

*Առաջինն ասաց.— Սկյուռ է անկարգ,*
*Կրակե՛ք, ի՞նչ եք նայում բերանբաց,*
*Մյուսը կանչեց՝ շո՞ւն է հասարակ,*
*— Մկնիկ է, տղե՛րք,— երրորդը գոռաց:*

*Երեք քաջ որսորդ տանջված ու սնքուն,*
*Որս էին անում անտառի խորքում...*

Փոխադրեց՝ Հարություն Գևորգյան

# Ալժիր

Հյուսիս-արևմտյան Աֆրիկայում՝ Ատլասի մըշտադալար լեռներից մինչև Սահարայի շեկ ավազուտները, տարածվում է արաբական մի երկիր — Ալժիրը։ Հին հունական լեգենդներում այսպես է նկարագրված այդ երկիրը, ուր թագավորում էր հսկա Ատլասը՝ «Բազմահազար կովեր ու ցուլեր, նրբագեղմ ոչխարներ են արածում Ատլասի դաշտերում։ Շքեղ այգիներ կան նրա տիրապետության սահմաններում, իսկ այգիների մեջ՝ ոսկեճյուղ ու ոսկետերև մի խնձորենի։ Սրա պըտուղները նույնպես ոսկեղեն են»։

Հսկա Ատլասն աչքի լույսի պես պահպանում էր այդ ծառը, որովհետև գուշակողներն ասել էին, թե մի օր Զևս աստծո որդի Պերսևսը կգա և կըփախցնի նրա ոսկեղեն խնձորները։

Եվ կարծես թե առասպելական գուշակությունը կատարվեց։ Սրանից 128 տարի առաջ ֆրանսիացի զավթիչները զենքի ուժով գրավեցին Ալժիրը։ Նրանք դարձան երկրի հարստությունների տերը։ Նրանք թալանում-տանում են Ալժիրի «ոսկեղեն խնձորները», խաղողն ու գինին, ձիթապտուղներն ու խուրման, թուզն ու նուռը, կիտրոնն ու նարինջը, ցորենն ու գարին, ծխախոտն ու բամբակը «կովերն ու ցուլերը», «նրբագեղմ ոչխարները», երկաթահանքն ու ֆոսֆորիտները։

Բայց Ալժիրի հերոս ժողովուրդն իր երկրի նվաճման առաջին իսկ օրից սկսած՝ զենքը վայր չի դրել։ Նա ըմբոստացել է, ապստամբել, պայքարել գաղութարարների դեմ։ 1920 թվականին ստեղծվեց Ալժիրի Կոմունիստական պարտիան, որը պաշտպան կանգնեց աշխատավորների շահերին։

1954 թ. Ալժիրում նորից ծավալվեց ազգային ազատագրական շարժումը, և մինչև այսօր շարունակվում են արյունալի կռիվները։

Սովետական կառավարությունը մի քանի անգամ բողոք է հայտնել ֆրանսիական գաղութարարների այդ արյունալի պատերազմի դեմ։

Սովետական Միությունը մասնակցում է Ալժիրի 100 հազարի հասնող գաղթականներին ցույց տրվող օգնությանը, ուղարկելով սննդամթերք, հագուստ, դեղորայք։

Ալժիրի ժողովուրդը կհաղթի, որովհետև նրա կողմն է բոլոր ազատասեր ժողովուրդների համակրանքը։

## ՀԱՅՐԵՆԱՍԵՐԸ



Այս աղջկա անունը Ջամիլա է։ Մի քանի ամիս առաջ ֆրանսիական դատարանը նրան մահվան դատապարտեց։ Մահապատիժը պետք է ի կատար ածվի գիլյոտինի միջոցով։ Արդեն կես տարի է, ինչ ալժիրցի խիզախ հայրենասեր Ջամիլա Բուհիրեդը դահճին սպասելով, տառապում է բանտի մահապարտների խցում։

Իսկ ի՞նչ վատ բան է արել Ջամիլան։ Ո՛չ մի վատ բան։ Նա միայն բացեիբաց հայտարարել է, որ ատում է գաղութարարներին, որ նա սիրում է իր հայրենիքը և ուզում է ազատագրված տեսնել հայրենի երկիրը։ Եվ դրա համար էլ ֆրանսիացի նվաճողները ուզում են վրեժ լուծել նրանից։ Բայց ամբողջ աշխարհի առաջադեմ երիտասարդությունը ոտքի է կանգնել Ջամիլայի կյանքը փրկելու համար։ Ո՛չ, Ջամիլան չպիտի մեռնի, նա պետք է ազատ արձակվի։

Ազատությո՜ւն Ջամիլա Բուհիրեդին։




ՏԻԳՐԱՆ ԼԵՎՈՆՅԱՆ

Դոդին զարթնեց, շփեց աչքերը ու ցանկացավ նորից քնել, բայց մի հաճելի միտք փախցրեց նրա քունը։

Իրենց գյուղը օդափոխության եկածների մոտ անցյալ կիրակի քաղաքից հյուրեր էին եկել։ Նրանց համար Դոդին ջուր էր կրել ու խորովածի համար անտառից ցախ հավաքել։ Իսկ այցելուները վերադարձին նրան իրենց ավտոմեքենայով տարել էին մինչև հարևան գյուղը։ Դոդին մի ժամ շարունակ իսկական ավտոմեքենա էր նստել։

Այդ դեպքը ցնցող տպավորություն էր թողել գյուղի երեխաների վրա։

Այսօր էլ կիրակի է։

Այլևս չկարողանալով պառկած մնալ, Դոդին վեր ցատկեց անկողնուց, դարակից մի կտոր հաց վերցրեց և դուրս ելավ փողոց։ Նա մի մեծ քար մոտեցրեց մայթին, նստեց վրան, մի քանի անգամ ախորժակով հորանջեց ու սկսեց դիտել խճուղին, որ ձգվում էր հեռո՜ւ, հեռո՜ւ, մինչև... ով գիտե ուր։

Արևը նոր էր ծագել։ Թույլ ճառագայթները անչափ դուրեկան էին։ Երկնքի պայծառ ֆոնի վրա, նարնջագույն ցոլքերով փայլփլում էր գյուղական մզկիթը։ Հեռվում անշարժացել էին արմավենիները։

Բոլորը նոր էին զարթնել և այնքա՜ն թարմ էին, զվարթ։

Իսկական կիրակի էր։

Դոդին ախորժանքով մտածեց, որ քիչ հետո զով առավոտը կտաքանա և նույնիսկ կհալչի, շոգը կըսկսի ճնշել։

Այդ ժամերին նա գնում էր տուն, պառկում անկողնու վրա ու երկար երազում հետաքրքիր ու զարմանալի բաների մասին, մինչև որ կամաց-կամաց թմրում էր ու քնում։

Իսկ Սահատի խանութում, որը ծառայում էր նաև իբրև սրճարան, օրվա ամենաշոգ ժամերին զով էր։ Սահատը քաղաքից բերել էր մի էլեկտրական գործիք, որի կոճակը երբ սեղմում էին, քամի էր առաջացնում։

Դոդիի հայրը գրեթե ամեն կիրակի այդտեղ էր լինում։ Նա հիմա էլ այդ խանութումն էր։

Տղան նայեց դեպի խանութը, որ գտնվում էր փողոցի հակառակ մայթին ու լսեց հոր ձայնը։

— Ընկերության համար հոգիս կտամ, ես ընկերական մարդ եմ։ Սրանից մի քանի տարի առաջ,— պատմում էր նա,— Հասանի տունը այրվեց, ես մեր հավերից մեկը տարա նրան ու ասացի...— Այստեղ նա երկար-բարակ պատմում էր, թե ինչ է արել։

Դոդին իր ամբողջ կյանքում լսել էր այդ պատմությունը։ Նա գլուխը ձանձրույթով շրջեց մի կողմ։

Խճուղով սև ու խոշոր տուփի ծանրության տակ կքած, մանրիկ քայլերով գալիս էր պատկերներ ցուցադրողը։ Նրա տրամադրությունը տեղն էր։ Նա քթի տակ ինչ-որ երգ մրթմրթալով, կանգ առավ խանութի առջև ու ներս նայելով բացականչեց.

— Սալամ ալեյքում*։

— Ալեյքումա սալամ** ,—լսվեցին ներսից հոր և խանութպանի ձայները։



— Մի վայրկյան ներս արի, մի բաժակ...

— Չէ, շնորհակալ եմ,—առարկեց ցուցադրողը,— պիտի աշխատեմ։

— Ներս արի, ջանմ, հյուրն աստծունն է։

Դոդին ծիծաղից թուլացավ, տեսնելով, թե ինչպես իր աժդահա հայրը այդ փոքրիկ մարդուն քաշքշելով մտցրեց խանութ։

— Դոդի...

---

* Բարի աջողում:

** Բարով եկար:

Չգիտես որտեղից, հանկարծ հայտնվել էր Գեմելը։ Նրա աչքերը խանդավառությամբ փայլում էին, ինքն էլ մի տեսակ շատ քաջ էր երևում։

— Տեսնո՞ւմ ես,— շշնջաց նա, ցույց տալով խանութի դռան մոտ գտնվող պատկերացույցի տուփը, որի վրա կախված էր մի փայլուն շեփոր։ Դրանով ցուցադրողը իր գալուստն էր ազդարարում։

— Տեսնո՞ւմ ես,— կրկնեց նա,— ոչ մեկին ոչ մի խոսք, իսկ դու տեր չկանգնես, առաջինը ես եմ տեսել։ Հասկացա՞ր...

Դողին նայում էր նրա՝ կճատ քթին, ծմերուկի նմանվող, խուզած գլխին ու ոչինչ չէր հասկանում։

Գեմելը գողեգող մոտեցավ խանութին, զգուշությամբ վերցրեց շեփորը ու ծլկեց դեպի հարևան փողոցը։

Դողին ամեն ինչ հասկացավ։

Նա պատկերացրեց, թե ինչ սոսկալի բան տեղի կունենա, երբ մարդը դուրս գա ու տեսնի, որ շեփորը չկա։

«Չհայտնե՞լ մարդուն Գեմելի մասին... Ո՛չ, այդ մատնություն կլինի... Դեռ հետո տղաներն էլ մի լավ դաս կտան»։

Նա վեր կացավ և ուզեց փախչել, բայց ուշ էր։

— Դողի՛,— լսվեց հոր ձայնը,— հսկիր, որ եղբորս գործիքին մարդ չմոտենա։

Դողին անշարժացավ։

— Էհե՜յ, լսո՞ւմ ես...

— Լսում եմ, հայրիկ,— շշնջաց տղան... ու նայեց մեխին, որից՝ քիչ առաջ կախված էր շեփորը։

«Վա՛յ, մայրիկ ջան, ես ի՞նչ անեմ,— հեծում էր նա մտքում,— ի՞նչ անեմ»... «Չասել նրան» մտածեց նա կրկին։ Ո՛չ, դրանից հետո ո՞վ ընկերություն կանի իր հետ, ո՞վ կնայի իր երեսին... Կասեն մատնիչ է, վախկոտ...

Նա այնքան ճնշվեց մտքերի տակ, որ մի պահ նայեց հեռավոր անտառին, հառաչեց ու երանի տվեց թռչուններին, որոնք ուրախ ճռվողում էին ու այդպիսի փորձանքի մեջ չէին ընկել...

— Ընկերության համար հոգիս կտամ,— գոռում էր հայրը։

— Մենք եղբայրներ ենք,— ասում էր խանութպանը։

Դողին անօգնական ու խեղճ նայում էր դեպի փողոցը, ուր փախել էր Գեմելը։

«Գուցե ետ բերի», մտածում էր նա... Բայց ոչ, Գեմելը այնպիսիներից չի, որ ետ բերի... Ի՞նչ անել ուրեմն, նա շփոթվեց, ու բոլոր մտքերը խառնվեցին իրար։ Ժամանակը աննկատելի անցնում էր, ու Դողին չէր կարողանում մի միջոց մտածել, որով ազատվեր փորձանքից, երբ անսպասելիորեն խանութից դուրս եկան ցուցադրողը, հայրը և խանութպանը։

— Ուշացա,— դժգոհեց ցուցադրողը, հայացքը հառելով պատկերացույցին։

— Շեփորս,— կմկմաց հանկարծ նա,— շեփորս չկա...

— Սպասիր, ա՛յ մարդ, ի՞նչ շեփոր,— ընդհատեց նրան խանութպանը,— երեխան էստեղ էր, փառք աստծո, ո՞վ պիտի տարած լինի շեփորդ...

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ






— Եղբայր, երդվում եմ, շեփորս գողացել են, վա՜յ բաբամ, ես կորա...

— Ցուս արա, մեղք ես,— համբերությունից դուրս եկավ Դողիի հայրը,— չլինի՞, թե կարծում ես մենք ենք գողացել շեփորդ։

— Դեռ ե՞ս լռեմ, շեփորս գողացար, ու ե՞ս լռեմ՝ սրիկանե՛ր, ա՛յ թե ինչու էիք ձրի հյուրասիրում։

— Ցա՜...— հառաչեց խանութպանը ու նայեց Դողիի հորը, սա էլ իր հերթին մի «յա՛» արձակելով, վրա հասավ մարդուն ու մի հարվածով տապալեց գետին։

Դողին շրջվեց ու փախավ։ Նա վազելով անցավ մի քանի փողոց, ապա կանգ առավ մի դարբասի մոտ։

— Գեմե՛լ...

Տանը կարծես մարդ չկար։

— Գեմե՛լ,— կրկնեց նա լացակումած։

— Ի՞նչ է,— լսվեց ծառի վրայից,— ի՞նչ ես ուզում։

— Գեմե՛լ, տո՛ւր շեփորը, լսո՞ւմ ես, տո՛ւր...

— Շեփորը ես եմ գտել, իմն է... Լավ, երբեմն կտամ դու էլ փչես։

— Չէ, տիրոջը պիտի տամ, մեղք է, նրան ծեծում են...

— Սուտ ես ասում, չե՛մ տա։

Դողին վարանեց ու քիչ էր մնում լար, երբ հանկարծ աչքերը փայլեցին մի հայտնությունից։

— Տո՛ւր, թե չէ կասեմ, որ դու ես գողացել։

— Լավ, շեփորը քեզ, միայն կտաս, ես էլ փչեմ։

— Չէ, տիրոջը պիտի տամ։

Գեմելը հուսահատ իջավ ծառից ու շեփորը բերեց։

— Ա՛ռ,— ասաց նա,— բայց եթե ասել ես, որ ես էի վերցրել...

— Լա՛վ, լա՛վ։ — Ու նա վազեց խանութի կողմը։

Այնտեղ ոչ ոք չկար, իսկ խանութը փակ էր։

Հեռվում, ուղղաձիգ խճուղու վրա հազիվ երևում էր պատկերներ ցուցադրողը։

Դողին սկսեց վազել։

Նա շատ ուրախ էր, որ այդքան հնարամտորեն, առանց որևէ մեկին վնաս հասցնելու, խնդիրը լուծում է։ Թող երեխաները ինչ ուզում են ասեն, հետո կգտնվեն այնպիսիներն էլ, որոնք կհասկանան, թե ինչ լավ բան արեց ինքը։

Նա վազում էր շնչակտուր, երբեմն միայն դանդաղեցնելով քայլերը, կողքի ծակոցները մեղմելու համար։

— Էհե՜յ,— կանչում էր նա,— էհե՜յ...— իսկ մարդը չէր լսում, բեռան տակ կքած՝ նա գնում էր ու գնում։

Դողին շեփորը հպեց շրթունքներին ու փչեց։

Ցուցադրողը մի պահ կանգ առավ, ապա որքան որ թույլ էր տալիս իր ծանր բեռը, սկսեց վերադառնալ։

Երբ մոտեցան, Դողին նրա աչքի տակ մի կապտավուն ուռուցք նշմարեց։ Նա տիրոջը երկարեց շեփորն ու շնչակտուր ասաց.

— Վերցրեք, ես բերի... ուրիշն էր գողացել։

Ցուցադրողը շեփորը վերցրեց, ավելի շատ խլեց, զննեց այն, ապա հանկարծ ամբողջ ուժով մի ապտակ իջեցրեց Դողիի դեմքին։

Դողին այդ բանին չէր սպասում։

— Ինչո՞ւ,— ուզեց հարցնել նա, բայց կոկորդից միայն մի խզզոց դուրս թռավ։ Նա մաքրեց կոկորդը, փորձեց խոսել, բայց մարդը տուփը շալակած արդեն հեռանում էր։

Դոդիի դեմքը այրվում էր։ Նա ուզեց ոտքերով գոփել գետինը, լալ, ճչալ... բայց դրանցից և ոչ մեկը չարեց, վիրավորանքն ու զարմանքը սեղմել էին նրա կոկորդը։

Դոդին տուն էր վերադառնում։

Տխուր էին գյուղական մզկիթը, հեռվում անշարժացած արմավենիները, խճուղին, որ անտանելի երկարությամբ ձգվում էր հեռո՜ւ, հեռու... դեպի Դոդիի համար անծանոթ վայրեր։

Փչացել էր ամբողջ կիրակին...

Բայց Դոդին ունեցել էր ուրախություններ։ Մի անգամ նա իսկական ավտոմեքենայի մեջ նստած գնացել էր մինչև հարևան գյուղը։ Բոլոր երեխաներն էլ գիտեին այդ ու երանի էին տալիս նրան։

Բայց ոչ ոք չգիտեր, որ հարևան գյուղից նա ոտքով էր տուն վերադարձել։

Դոդին հիշեց այդ մասին, ու նրա դեմքին խաղաց մի երջանիկ ժպիտ։

# ԱԳԱՀ ՊԱԿԸ

ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ

(Կորեական հեքիաթ)

Կորեայում հին ժամանակ
Կար մի գեր մարդ՝ անունը Պակ.
Թեպետ ուներ ոսկի, արծաթ,
Բայց, արի տես, ագահ էր շատ.
Եվ ուներ մի սովորություն՝
Շատ էր սիրում որսորդություն։
Թակարդն առած, շան հետ՝ հլու
Գնում է սար որս անելու։
Ամռան օր էր, շոգ ու կրակ։
Պառկում է լուռ մի թփի տակ,
Սպասում է, թաքուն նայում,
Մեկ էլ հանկարծ բախտն է բանում,
Մի սկյուռ է բռնում, գիտե՞ք,
Չէր պատահել այսպիսի դեպք.
Եվ ի՜նչ սկյուռ՝ շարմաղ մի զարդ,
Արծաթափայլ սկյուռ էր այդ։
Նա հուզվում է և աղերսում
Ու մարդկային լեզվով ասում.
— Պակ, եթե ինձ դու բաց թողնես,
Կյանքիս դիմաց՝ որքան ուզես,
Մաքուր, փայլուն, հուր-հրեղեն
Կբաշխեմ քեզ արծաթեղեն...
— Մի պայմանով,— ասաց Պակը,—
Ինչ որ ընկնի ձեռքիս տակը,
Թեկուզ լինի մի քար կամ խիճ,
Դառնա արծաթ, ուրիշ ոչինչ։
Հը, ի՞նչ կասես,
Համաձա՞յն ես։
— Համաձայն եմ, բաց թող ինձ շուտ,
Գոհ կլինես ինձնից անշուշտ։
— Դե որ խոսքիդ տերն ես հաստատ,
Բաց եմ թողնում, գնա ազատ։
— Մնաս բարով,— սկյուռն ասաց,
Ցատկոտելով փախավ գնաց։
«Չլինի՞ թե նա ինձ խաբեց»...
Թակարդն առավ տուն շտապեց։
Պակի ձեռքում թակարդը այդ,
Ա՛յ քեզ հրաշք, դարձավ արծաթ...
Եվ նա խնդուն
Շտապեց տուն։
Հենց որ բացեց իր տան դուռը,
Զարդ-բանալին մնաց բուռը...
Փայտե դուռն էլ դարձավ արծաթ,
Ուրախացավ Պակը անչափ...
Բայց ինչի որ ձեռք էր տալիս՝
Լիներ բրինձ, հաց կամ թե միս,
Անկողինը, մածուն և կաթ
Դառնում էին մաքուր արծաթ։
«Ոչինչ, մի կերպ կդիմանամ,
Եվ շատ հարուստ մարդ կդառնամ»...
Բայց մաշվում էր Պակը այնպե՜ս,
Ցամաք ձորի աղվեսի պես...
Ազատվելու չկար հնար,
Քաղցած, ծարավ ո՞նց դիմանար։
Վերջին անգամ խորը շնչեց,
Պաղ անկողնում շունչը փչեց։
Երբ ագահ է լինում մարդը՝
Էլ չեն փրկի փողն ու զարդը։

## ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆ

### Անուշ



Փոքրիկ ընթերցող, դու քո մանկական առաջին թոթովանքների հետ սիրել և անգիր ես արել մեր մեծ բանաստեղծ Հովհ. Թումանյանի ստեղծագործությունները: Դու ինչքան էլ մեծանաս, Թումանյանի երկերը քեզ համար այնքան ավելի խորը և գեղեցիկ կդառնան: Թումանյանը մեր գրականության Արարատ լեռն է, որին ինչքան մոտենաս, այնքան ավելի բարձր ու անհաս կերևա: Նա ոչ միայն քեզ է հուզում և ոգևորում, այլև մեր արվեստագետներին՝ նկարիչներին, քանդակագործներին, կոմպոզիտորներին: Նրանք, ներշնչվելով Թումանյանի կերպարներից, կերտել են հիանալի ստեղծագործություններ:

Մեր ամսագրի այս համարում՝ Թումանյանի մահվան 35-ամյակի առթիվ, տպագրում ենք հայ նկարիչների գործերից, որոնք կատարված են մեծ բանաստեղծի անմահ ստեղծագործությունների թեմաներով:



Վ. ՍՈՒՐԷՆՅԱՆ Գառնիկ Ախպերը



# Գիտությունը զոհեր է պահանջում



Ռ. ՄԵԼԻՔ-ՍԱՀԱԿՅԱՆ

Նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

Շատ դժվար է գիտական հետազոտություններով զբաղվել, եթե տատիկը հետամնաց է և գիտությունից ոչինչ չի հասկանում։ Երբ ես ժամերով նստում եմ մի որևէ կարևոր փորձի վրա, տատիկը բարկանում է.

— Գիտեմ քո փորձերի խերը, — ասում է նա, — ամեն անգամ մի բան փչացնում ես։ Դատարկ գործերով զբաղվելու տեղ, լավ կանեիր հավերին ջուր տայիր ու գնայիր հացի։

Այսպես էլ անարդարությո՞ւն. երեկ ես գնացի հացի, այսօ՞ր էլ գնամ, կարծես չգիտի, որ այսօր Տիգրանիկի հերթն է։ Բայց, հապա փորձիր, հիշեցրու այդ մասին, անմիջապես կասի, որ ես մեծ տղա եմ ու չեմ ամաչում, հաշիվ եմ պահում։ Լա՞վ, ես ի՞նչ անեմ, որ Տիգրանիկը երեք տարի չորս ամիս ու տասներկու օրով ինձնից փոքր է, ուրեմն ամբողջ կյանքումս պիտի տանջվե՞մ։ Երեք տարի առաջ էլ էին ասում, որ ես մեծ եմ, իսկ նա՝ փոքր։ Կռվելիս փոքր չէ։ Գիտի էլի, որ ամեն անգամ ինձ են պատժելու։ «Մեծը դո՞ւ ես», ինչպե՞ս չէ։

Բայց ես պարզապես համոզվել եմ, որ տատիկը քար է դնում գիտության անիվի տակ։ Մայրիկն էլ է ասում, որ գիտությունը մի ժամանակ հալածվել է, և նրա անիվների տակ հետամնաց մարդիկ քար են դրել։ Իսկ երեկ օրացույցում կարդացի, թե ինչպես են ինկվիզիտորները խարույկի վրա այրել Ջորդանո Բրունոյին, այն բանի համար, որ նա ասել է, թե աստված չկա և Երկիրը պըտույտ է գալիս Արեգակի շուրջը։ Ի միջի այլոց, տատիկն էլ բարկացավ, երբ ես ասացի, որ աստված չկա, և Երկիրը պտտվում է։ Ես այլևս չկարողացա ինձ զսպել և ասացի, որ ինքն էլ է ինկվիզիտոր, իսկ նա վզակոթիս մի լավ հասցրեց ու զայրացավ.

— Մեր ժամանակ քո չափ տղաները աշխատում էին խանութներում, տուն էին պահում, իսկ դու միայն վնաս ես հասցնում։

Հետո նա սկսեց թվել իմ փչացրած իրերը, ասաց, որ սեղանի սփռոցն եմ ծակել էլեկտրական զոդիչով, մահճակալի ծածկոցն եմ փտեցրել, վրան ինչ-որ հեղուկ թափելով։ Էհ, ի՞նչ ասես, երբ մարդիկ դեմ են գիտության զարգացմանը։ Բա ես մեղավո՞ր եմ, որ լաբորատորիա չունեմ և ստիպված սեղանի վրա եմ հավաքել իմ երեք լամպանի ռադիոընդունիչը։ Ասենք ծակը պստիկ է, և եթե սեղանի այդ մասին կավիճ քսես ու սփռոցը տեղից չշարժես, ոչ մի բան էլ չի երևա։ Մահճակալի ծածկոցի վրա էլ հայտացուցիչ էր թափվել, երբ ես լուսանկարչական ժապավենն էի հանում մահճակալի տակ, քանի որ այնտեղ մութ է։ Թափված տեղում ծածկոցը սկզբում դեղնեց, իսկ հետո փտեց։ Մայրիկն այդ տեղի վրա բարձն էր դնում և ոչինչ չէր երևում։ Բայց տատիկը երկար ժամանակ չէր հաշտվում ու բարկացած խոսում էր։ Ա՛յ, հենց այդ ժամանակ էր, որ ասացի, թե գիտությունը զոհեր է պահանջում։ Մայրիկը ժպտաց, իսկ տատիկն ասաց, որ ես կարող եմ գլուխս պատին էլ տալ, երբ ինքս կաշխատեմ։ Դե, արի ու խոսք հասկացրու։

Բայց ես համառ եմ, և տատիկի արգելքներն ինձ չեն կարող կանգնեցնել։ Չէ՞ որ գիտությունը պահանջում է հետևողական լինել։

Մի անգամ «Հետաքրքրաշարժ ֆիզիկայում» ես կարդացի, որ օդը կշիռ ունի և որ ամեն մարդ իր ուսերի վրա 20000 կիլոգրամ ծանրություն է կրում, որը կոչվում է մթնոլորտային ճնշում։ Ա՛յ քեզ բա՛ն։ Ես չէի էլ պատկերացնում, որ այդքան ուժեղ եմ ու դիմանում եմ այդպիսի ծանրության։ Հիմա եմ հասկանում, թե ինչու հացի գնալիս այդպես շուտ եմ հոգնում։ Երբ Տիգրանիկին ասացի այդ մասին, նա չհավատաց, կարծեց ձեռ եմ առնում։ Դե նա, ասենք, կիսագրագետ է, միայն այբուբենի կեսը գիտի։ Բայց դառնանք մթնոլորտային ճնշմանը։ Գրքում ես կարդացի նաև, թե ինչպես կարելի է ապացուցել այդ ճնշման գոյությունը։ Պարզվեց, որ դա դժվար չէ. պետք է վերցնել նավթի բիդոն, մի քիչ ջուր լց-



նել մեջը և դնել կրակի վրա։ Երբ ջուրը եռա և սկսի ուժեղ գոլորշի արձակել, պետք է բիդոնի բերանը ամուր խցանել ու անմիջապես սառը ջուր ածել վրան։ Ջրի սառնությունից բիդոնի ներսի գոլորշին իսկույն կխտանա ու նորից ջուր կդառնա և, քանի որ բիդոնի ներսը օդ չի անցնում, ապա գոլորշուց ազատված տարածությունը լրիվ դատարկ կլինի։ Այդ անօդ տարածությունը վակուում է կոչվում։ Բայց կարևորն այն է, որ մթնոլորտային ճնշումից մարդու աչքի առաջ անօդ տարածություն ունեցող բիդոնը իսկույն ճխլվում է։

Այս բոլորն ուշադիր կարդալուց հետո, ես հաստատ որոշեցի ապացուցել մթնոլորտային ճնշման գոյությունը։ Բայց որտեղի՞ց բիդոն ճարել։ Տատիկը մի հատ նորն ունի, բայց փորձիր խնդրել... Դե, նա չի էլ ուզում հասկանալ, որ գիտությունը զոհեր է պահանջում։ Նույնիսկ Տիգրանիկը համաձայնեց, որ գիտությունը զոհեր է պահանջում, միայն թե վախենում էր, թե տատիկը կնկատի բիդոնի անհետանալը։ Բայց տատիկը ո՞նց կարող էր նկատել, երբ շուկա էր գնացել, իսկ մայրիկն աշխատանքի տեղում էր։ Կարծես չգիտեմ է՛լի, որ երբ տատիկը գնալիս հրամայում է խելոք մնալ ու հավերին ջուր լցնել, ուրեմն մի չորս ժամ կբացակայի։ Եվ հետո, հավատալս չէր գալիս, որ բիդոնը կարող է բոլորովին անպետք դառնալ։

Այս բոլորը կշռադատելուց ու Տիգրանիկի հետ խորհրդակցելուց հետո, մենք վերցրինք բիդոնը և անցանք գործի։ Ամեն ինչ կարգին էր գընում, ճիշտ այնպես, ինչպես գրքում էր նկարագրված։ Բայց երբ մենք սառը ջուրը լցրինք բիդոնի վրա, նա մի ակնթարթում ճզմվեց ու լավաշի նման տափակեց։

Ա՛յ քեզ հրա՜շք...

Տիգրանիկը մի պահ ապուշ կտրեց, իսկ հետո ուշքի եկավ ու ասաց, որ հիմա տատիկի ձեռքից չենք պրծնի։ Ես նրան համոզեցի այդ մասին ոչ ոքի բան չասել, ու մենք այլանդակված բիդոնը թաքցրինք մի ապահով տեղ։

Տատիկն սկզբում չնկատեց բիդոնի կորուստը, բայց երբ տեսավ, դես ու դեն ընկավ, հարցուփորձ արեց բոլոր հարևաններին, ոչինչ չկարողացավ իմանալ ու անիծեց բիդոնը տանողին։

Ամեն ինչ բարեհաջող կվերջանար, բայց Տիգրանիկը դավաճանեց։ Մի անգամ նա ինձ բարկացրեց ու դուրս փախավ սենյակից և վազելու ժամանակ ճակատով զարնվեց դռանը։ Ես ասացի, որ տեղն է նրան։ Նա զայրույթից ու ցավից ճչաց.

— Իսկ քեզ տեղն է, որ տատիկի բիդոնը փըչացրիր։ Սպասի՜ր...

Պարզ է, տատիկը, որ խոհանոցում էր, լսեց ամեն ինչ ու ինձ մի ժամով անկյուն կանգնեցրեց։ Ես հպարտորեն հայտարարեցի, որ հրաժարվում եմ բոլոր տեսակի ուտելիքներից և միայն կիսելը կուտեմ։ Բայց դա տատիկի վրա չազդեց։ Միայն մայրիկը ժպտաց ու ասաց.

— Համբերիր, «պրոֆեսոր», չէ՞ որ գիտությունը զոհեր է պահանջում։





# ԿՐԻԱՆ ՈՒ ՆԱՊԱՍՏԱԿԸ

Մ. ԽԵՐԱՆՅԱՆ

Կրիան դանդաղ քայլում էր լուռ
  Դեպի բլուր
Ու հենց կանաչ բլրի տակին
Նա հանդիպեց Նապաստակին։
— Այդպես ո՞ւր ես գնում, Կրիա՛,
Տունդ առած մեջքիդ վրա։
— Այս բլուրն եմ ուզում ելնել
Եվ այնտեղից աշխարհ տեսնել։
— Կրիան բլո՞ւր...
  Մի՛ փորձիր զուր,
Չես հասնի քո նպատակին։
— Վախկոտ չեմ ես և ոչ էլ ծույլ.—

Ասաց Կրիան Նապաստակին։
Ուզում ես՝ եկ, ընկերանանք
Ու միասին վեր բարձրանանք։
Բայց շլդիկը խնդաց նրա
Այդ սրտաբաց խոսքի վրա։
— Ես՝ Նապաստակս արագավազ,
Ես՝ վազկանըս արագահաս...
Գնա՛, ես քո ընկերը չեմ,
Ես դեռ այստեղ պետք է ննջեմ։
Եվ երբ էլ որ զարթնեմ քնից՝
Կգամ, կանցնեմ ես քեզանից։—
Ասաց շլդիկն ինքնավստահ,
Պառկեց այնտեղ ու քուն մտավ։
Իսկ մեր Կրիան հաստատաբար,
Դանդաղ թեպետ, բայց անդադար
Քայլեց, բլրի կատարն հասավ,
Նայեց չորս կողմ, աշխարհ տեսավ։
Եվ այնտեղից ձայնով ուժգին
Կանչեց գոռոզ Նապաստակին։
Նապաստակը նրա ձայնից
  Զարթնեց քնից,
Տեսավ, որ ի՜նչ... Կրիան ահա՝
Կանգնած բարձր բլրի վրա՝
Ծիծաղում է, խնդում քահ-քահ...
  Այդպես է միշտ.
Ով որ գոռոզ ու մեծամիտ՝
Պարծենում է և հոխորտում,
Նա կմնա ստորոտում։

## *Մուկն ու մեղուն*

Վ. ՀԱԿՈԲՅԱՆ



*Գող մուկը դիմեց*
*Մեղվին մի անգամ*
*Ու բացեց սիրտը,*
*Ասաց.—Բարեկա՛մ,*
*Այդ ո՞նց է՝ երգում,*
*Թռչկոտում ես միշտ,*

*Մինչդեռ իմ հոգում*
*Երկյուղ կա ու վիշտ:*
*—Ուրախ, աներկյուղ*
*Կծպտաս և դու,*
*Երբ աչք չունենաս*
*Վաստակին մարդու:*



Նկ. Օ. ՍՍՐՅԱՆԻ




# Գրքերի աշխարհում

## „ԿՈՐՈՒՍՅԱԼ ԱՇԽԱՐՀ"

Լոնդոնի մեծ դահլիճներից մեկում Կենդանաբանական ինստիտուտը ժողով է հրավիրել: Չելենջերը, Սամերլին, Լորդ Ռոքստոնը և Մելոունը նստած են պատվավոր տեղերում:

Դահլիճը լեփլեցուն է: Այդտեղ են հավաքվել Անգլիայի, Ֆրանսիայի, Գերմանիայի և շատ երկրների ականավոր գիտնականներ: Նրանք եկել են լսելու խիզախների գործերի մասին: Խոսքը տրվում է Սամերլիին: Ինչի՞ մասին է պատմում պրոֆեսորը: Այդ ամենը ոչ միայն դահլիճի հանդիսականներին, այլև գիտությամբ հետաքրքրվող շատերի համար արժեքավոր է: Նա պատմում է Անհայտ երկրի՝ կորուսյալ աշխարհի մասին: Նըրանք այնտեղ տեսել են միլիոնավոր տարիներ առաջ ապրած միջատներ, կենդանիներ, որ այժըմ անհետացած էին համարվում:

Դահլիճի նշանավոր պրոֆեսորներից մեկը՝ Իլլինգվորտը, իր կողմնակիցներով այդ ամենը կասկածի տակ է առնում, որովհետև ապացուցող փաստեր չկան...

Այդ ժամանակ է, որ կատարվում է հրաշքը: Պրոֆեսոր Չելենջերը բերել է տալիս մի մեծ արկղ, բաց է անում նրա կափարիչը: Հսկայական պտերոդակտիլը՝ նախապատմական թռչունը, դուրս է թռչում և սավառնում դահլիճի կամարների տակ: Չորս կողմն սկսվում է իրարանցում, ուշաթափություն:

Թռչունը բաց լուսամուտից դուրս է թռչում և անհետանում... Բոլորը հավատում են, ոգևորված՝ ձեռքերի վրա են տանում Չելենջերին և նրա խմբին:

Իսկ, իսկապես, ի՞նչ էին արել այդ հերոսները... Դժվար է պատմել ամեն ինչ, ինչ որ տեսել, ինչի հանդիպել էին նրանք Անհայտ երկրում: Ինչքա՜ն արկածներ, ինչքա՜ն հուզումնալից պահեր էին ապրել նրանք, բայց չէին վախեցել, որովհետև իսկական գիտության մարդիկ էին:

«Կորուսյալ աշխարհը», որ գըրել է անգլիացի նշանավոր գըրող Արթուր Կոնան Դոյլը, պատմում է նախապատմական ժամանակների, մեզոզոյան, յուրայան դարաշրջանների մասին: Այդտեղ կարծես կենդանանում են սարսափելի դինոզավրերը, պտերոդակտիլները և այժմ մեռած այլ կենդանիներ:

Բնագիտությունը, աշխարհագրությունը, հնէաբանությունը, որոնց մեջ այնքան հմուտ է հեղինակը, կարողանում է հետաքըրքրական ձևով մատուցել:

Վեպը լույս տեսավ 1912 թվականին և մեծ հաջողություն ունեցավ: Ուժեղ կամքի տեր, հնարամիտ, վտանգներն արհամարհող, նպատակին ձգտող մարդկանց դեպի նախապատմական ժամանակները կատարած ֆանտաստիկական պատմությունը ձեզ շատ բան կսովորեցնի: Երեխաներ, կարդացեք «Կորուսյալ աշխարհ» հետաքրքրաշարժ գիրքը:

Լ. ԱՍՄԱՐՅԱՆ

## „ՈՍԿԻ ՄԱՐԳԱԳԵՏԻՆ"

Մի անգամ գայլերի ոհմակը հալածում է մի արջի: Սա ճարահատյալ իրեն գցում է անտառապահի խրճիթի հաշտը և թաթերով ներսից ամուր սեղմում դուռը: Ծերունին գլխի է ընկնում, թե բանն ինչումն է, և խնդրում է արջին, որ դուռն ամուր պահի, իսկ ինքը սկսում է կրակել գայլերի վրա: Երեք գայլ սպանելուց հետո, պահակը մըյուս գայլերին փախուստի է մատնում: Արջը ամբողջ ձմեռը մնում է պահակի հետ և գարնանը հրաժեշտ տալիս նրան: Ծերունին արջի վզից մի սպիտակ վզնոց է կապում, որ որսորդները չխփեն նրան:

Կարդալով ռուս նշանավոր գրող Միխայիլ Պրիշվինի «Ոսկի մարգագետին» գիրքը, նման հետաքրքիր ու զարմանալի պատմությունների կհանդիպեք կատվի կաթով սնվող աղվեսի ձագի, ընտանի կռունկի մասին, կիմանաք, թե ինչպես է բազեից հա-

լածված արտույտը ապաստան գտնում որսորդների մոտ: Իսկ ինչքա՜ն բան կիմանաք բնտանի կենդանիների, բնության երեվույթների և բուսական աշխարհի մասին: Որտե՞ղ ասես չի շրջագայել հետաքրքրասեր գրողը, բնության ի՜նչ հրաշալիքներ ասես, որ չի տեսել նա մեր լայնածավալ Հայրենիքի բնաշխարհում: Ճիշտ է, Պրիշվինը որսորդությամբ է զբաղվել, բայց նրան ոչ այնքան որսորդությունն է հետաքրքրել, որքան բնության գրկում լինելը և ուսումնասիրելը: Մ. Պրիշվինի պատմվածքները արժեքավոր են ոչ միայն իբրև գեղարվեստական երկեր, այլև աշխարհագրական, բնագիտական ուսումնասիրություններ:

Կարդացեք «Ոսկի մարգագետին» գիրքը:

Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

## „ՄԵԾԵՐԻ ՈՒ ՓՈՔՐԵՐԻ ՄԱՍԻՆ"

«Ես մեծացել եմ մատիտը և գրիչը ձեռքիս», իր ինքնակենսագրության մեջ այսպես է գրել հայտնի մանկագիր և նկարիչ Եվգենի Չարուշինը:

Եվ, իսկապես, հեղինակը դեռևս փոքր հասակից զբաղվել է նկարչությամբ, քիչ ավելի ուշ՝ գրականությամբ: Հետագայում նա ավարտում է Լենինգրադի Գեղարվեստի ակադեմիան և նվիրվում մանկական գրքերի պատկերազարդման գործին: Չարուշինը փոքր հասակից սիրում էր և որսորդությունը. նա օրերով անց էր կացնում բնության գրկում:

«Ես մանկությունից սովորել եմ,—գրում էր Ե. Չարուշինը,— հասկանալ կենդանուն, հասկանալ նրա շարժումներն ու միմիկան: Ինձ համար էլ նույնիսկ մի տեսակ զարմանալի է, որ որոշ մարդիկ բոլորովին չեն հասկանում կենդանիներին»:




Երբ մենք կարդում ենք «Յաշկա» պատմվածքը, իմանում ենք, որ ոչ միայն թութակին կարելի է խոսել սովորեցնել, այլև ագռավին, կաչաղակին, նույնիսկ սարյակին: Իսկ ինչպե՞ս, կարելի է այդ թռչուններին խոսել սովորեցնել: Պարզվում է, որ դա այնքան էլ դժվար չէ: Դուք ևս կարող եք այդ անել, երբ կարդաք «Յաշկա» պատմվածքը:

«Ճանապարհորդները» գողտրիկ պատմվածքում հեղինակը նկարագրում է, թե ինչպես իր բարեկամներից մեկը ձեռք է բերում երկու փոքրիկ աղվես, և ինչպիսի չարաճճիություններ են անում այդ թավ պոչավորները, մինչև անգամ մտնում են վառարանի մեջ, բարձրանում ծղխնելույզով և հայտնվում հարեվանի տանը:

Մեկը մյուսից ավելի ուշագրավ ու հետաքրքիր են Չարուշինի «Գայլի ձագը», «Արջի քոթոթը», «Չկնորս արջը», «Ցախսաքլորը և ագռավը», «Զորս բադը», «Երկու մկնիկը» և մյուս պատմվածքները:

Երեխանե՛ր, կարդացեք այս գիրքը և հարստացրեք ձեր գիտելիքները:

Հ. ՇԻՐԱԶՅԱՆ



Իսկ այս գրքերը ձեզ համար մեր ամսագիրն է հրատարակել: Ռ. Ղարիբյանի «Լուսիկի կատուն», Կ. Ա. Սիմոնյանի «Մարտեցիները» և Լ. Բառնակյանի «Թե ինչպես մուկը կատու կերավ» գրքերը վաղուց են լույս տեսել: Եթե դեռ չեք կարդացել, վերցրեք գրախանութներից կամ գրադարաններից ու կարդացեք. դրանք շատ հետաքրքիր գրքեր են: Իսկ «Լուսաստղիկն ու ծղրիդը» հեքիաթը, որ գրել է Օ. Սանասարյանը, նոր է լույս տեսել:

Այս բոլոր գրքերը «Պիոների» նվերներն են: Դեռ ինչքա՞ն նվերներ դուք կստանաք մեր ամսագրից:




Քերծերի արանքից երևում է անռելի ձորը, իսկ առաջին պլանում գետակն է՝ լեռնաշխարհի զուլալ, սպիտակափրփուր գետակը։ Փայտաշեն, խարխուլ կամարը կամրջում է գետակը։ Կամարի վրայով մյուս ափն է անցնում մի խեղճ գյուղացի՝ շալակին ով գիտե ինչ։

Ժայռի կատարին, ուղիղ ձորի պռնկին վեր են խոյանում գյուղական տները, որ ավելի շուտ բերդերի են նման։

Հեռու-հեռվում, այնտեղ, ուր արևի ոսկի շողերն են խաղում, իր ճերմակած գլուխը երկինք է մխրճել քառագագաթ լեռը։

Դա «Աղբյուր» ամսագրի առաջին համարի շապիկն է։ «Աղբյուրը» առաջին մանկական պարբերականն էր, որ մանուկների հետ խոսում էր հայերեն։ Ուղիղ 75 տարի է անցել այն ժամանակվանից, ինչ հրատարակվել է «Աղբյուր»-ի առաջին համարը։

Ընդամենը հիսուն բաժանորդ ուներ հայկական առաջին մանկական պարբերականը։ Իսկ դա նշանակում էր, թե ուր որ է կմարի նրա հրագը, ավազուտի մեջ կկորչի վճիտ աղբյուրը։ Բայց մանկական զուլալ աղբյուրը չցամաքեց։

Մանուկ, բայց համարձակ ամսագրին հաջողվեց արագորեն ոտքի կանգնել։ Առաջին տարվա ընթացքում նա տարածվեց Ռուսաստանի ավելի քան հարյուր քաղաքում, ունենալով ութհարյուր բաժանորդ։ Այն ժամանակ դա մեծ բան էր։

«Աղբյուրի» էջերում տպագրվում էին բազմաթիվ մանրավեպեր, զրույցներ, հեքիաթներ, համփոփական ու կենսագրական նյութեր, բանաստեղծություններ, գիտության և արվեստի մասին հոդվածներ, հետաքրքրական տեղեկություններ, զվարճալիքներ, խաղեր, խնդիրներ, անեկդոտներ։ Նրա համարները նկարազարդում էին հայտնի նկարիչներ Վ. Սուրենյանը, Գ. Բաշինջաղյանը և ուրիշներ։

Ամսագրին ակտիվորեն աշխատակցում էին Րաֆֆին ու Ղազարոս Աղայանը, Հովհաննես Հովհաննիսյանն ու Պերճ Պռոշյանը, Հովհաննես Թումանյանն ու Ավետիք Իսահակյանը։

Տոլստոյի ու Տուրգենևի, Անդերսենի ու Զոլայի, Մոպասանի, Հյուգոյի ու Դոդեի, Շիլլերի ու Լերմոնտովի մի շարք գործերը «Աղբյուրի» շնորհիվ դառնում էին հայ մանուկների սեփականությունը։

Երեսուն և հինգ տարի շարունակ «Աղբյուրը» ձգտում էր իր զուլալ ջրով զովացնել ընթերցասեր, բայց կրթության կարոտ հայ մանուկների, ինչպես նաև մեծահասակների պապակ սրտերը։

Մ. ՀԱԿՈԲՅԱՆ

## «Աղբյուրի» էջերից

## ԽԱՆՈՒԹՊԱՆԸ ԵՎ ԱՍԱՏՈՒՐԸ



*Պետրոսենց Ասատուրը իրենց գյուղից ձիով ճանապարհ է ընկնում դեպի Ա. քաղաքը։*

*Ասատուրը ճանապարհին իջնում է խանութպանի մոտ։ Նա խնդրում է, որ իր ձիուն գոմը տանեն՝ գարի ուտեցնեն և հետո հաշիվը ներկայացնեն,*

*Ձիուն ուտեցնում, կշտացնում են։*

*Մի փոքր ժամանակից հետո՝ Ասատուրը պատրաստվում է ճանապարհ ընկնելու, գնում է խանութպանի մոտ՝ հաշիվը վերջացնում ու ձին խնդրում։*

*— Ի՞նչ ձի, ի՞նչ բան, ինչի՞ց ես ասում,*

դու ոտով ես եկել, խելքդ գլուխդ հավաքի, թե չէ...— ասում է խանութպանը։

— Ես ձեզ ասում եմ՝ ձիս բերեք, եթե ոչ՝ այն կանեմ, ինչ որ իմ հայրն է արել։

— Ես էլ քեզ ասում եմ, որ դու ոտով ես եկել, քո հաշվի մեջ շատ սխալ ես, կրկին ասում է խանութպանը։

— Ասում եմ՝ ձիս բերեք, եթե ոչ, այն կանեմ, ինչ իմ հայրն է արել,— կրկնում է նա։

Խանութպանը կրկին այս լսելով, իսկույն ձին բերում է, վախենալով մի գուցե սպանի կամ բանտարկել տա, և հետո հարցնում է.

— Քո հայրը ի՞նչ է արել։

Ասատուրը պատասխանում է.

— Մի օր հորս էլ այդպիսի մի բան է պատահել, և նա ճարահատյալ իր խուրջինը վերցրել է, ուսը գցել ու այնպես ոտով ճանապարհ ընկել։

## ԳԵՂՋԿԱԿԱՆ ԻՐԱՎԱԲԱՆՈՒԹՅՈՒՆ



յուղի կոշկակարը մի ճանապարհորդի թալանելու պատճառով դատապարտվեց կախաղանի։

Գյուղացիք հավաքվեցին դատավորի մոտ և խնդրեցին ներել նրան, ասելով, որ նրանց բոլոր գյուղերում միմիայն մի կոշկակար կա և, եթե նրան կախեն, բոլորը պիտի բոբիկ ման գան։

— Իսկ ինչպե՞ս պետք է ես կատարեմ օրենքը,— ասաց դատավորը։

— Ա՛յ, հարևան գյուղում երկու կոշկակար կա, վերցրեք նրանցից մեկին և կախեցեք,— պատասխանեցին գյուղացիք։

## ԲՆԱԳԻՏՈՒԹՅԱՆ ԴԱՍԻՆ



ԱՐԺՈՒՀԻ. — Ուրեմն ես ձեզ բացատրեցի, որ տաքությունից մարմինները լայնանում են, իսկ ցրտից ընդհակառակը՝ սեղմվում են։ Պետրոսյան, չգիտե՞ք, արդյոք, մի որևէ օրինակ։

ԱՇԱԿԵՐՏ.— Ամռանը օրերը ամենից երկար են լինում, իսկ ձմռանը՝ ամենից կարճ։

## ԴՊՐՈՑՈՒՄ



ՍՈՒՑԻՉ. — Հովհաննիսյան, եթե դուք հինգից հանեք հինգ, ի՞նչ կստանաք։

Հովհաննիսյանը լռում է։

ՈՒՍՈՒՑԻՉ. — Զգիտե՞ք, մի՞թե չեք կարող երևակայել այդ հասարակ բանը։

Հովհաննիսյանը դարձյալ լռում է։

ՈՒՍՈՒՑԻՉ. — Օրինակ, դուք գնեցիք հինգ հատ շաքարեղեն և այդ բոլոր հինգն էլ կերաք, այն ժամանակ ի՞նչ կմնա։

ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ. — (Ժպտալով)։ Շաքարեղենի թղթերը։

## ԱՄԵՆԱԿԱՐՃ ՀՈԴՎԱԾԸ



ՍՈՒՑԻՉ.— Մի հոդված գրեցեք այն նյութի շուրջը, թե որքան վնասներ հասցրեց մեզ երեկվա եղանակը, բայց կարճ ու համառոտ։

Մյուս օրը աշակերտները բերում են իրենց հոդվածները։

ՈՒՍՈՒՑԻՉ.— Ո՞վ է ամենից կարճ գրել։

— Ես,— պատասխանում է Հռիփսիմեն։

ՈՒՍՈՒՑԻՉ.— Դե կարդա։

ՀՌԻՓՍԻՄԵ.— «Թե որքան վնասներ հասցրեց մեզ երեկվա եղանակը՝ աննկարագրելի է»։

# Աշխարհի չեմպիոնը

Դժվար ձև է ժամանակակից հնգամարտը. հեշտ չէ միևնույն ժամանակ և՛ ճարպիկ ձիավարող լինել, և՛ լավ սուսերամարտիկ, և՛ դիպուկ հրաձիգ, և՛ դիմացկուն լողորդ, և՛ արագ վազող։ Ստոկհոլմցի բասպորտասերներն անհանգստանում էին։ Ո՞ր երկիրը կնվաճի պատվավոր կոչումը, ո՞վ կդառնա աշխարհի չեմպիոնը։

— Ամերիկացի Դանիելսը բոլորից ուժեղն է,— նախագուշակում են շատ թերթեր։

— Շվեդները կամ ֆինները,— գրում են ուրիշները։

Եվ ոչ ոք չէր տալիս սովետական սպորտսմենների անունները։

Բայց ահա հասնում է աշխարհի առաջնության բացման օրը։ Հանդիսավոր իրադրություն։ Դրոշակները, համարյա բոլոր երկրների դրոշակները զարդարում են ձիասպորտի վայրը, բարձրախոսները բազմաթիվ լեզուներով «Ստարտ» են ազդարարում։

Սովետական Միությունը ներկայացնում են երևանցի Ի. Նովիկովը, լենինգրադցիներ Ա. Տարասովն ու Ն. Տատարինովը։

Առաջին օրվա արդյունքները սովետական սպորտսմենների համար հեռու են գոհացուցիչ լինելուց։



Աշխարհի առաջնության երկրորդ օրը սպորտային պայքարը ծավալվում է սուսերամարտից։ Այս ձևում հրաշալի արդյունքներ են ցույց տալիս սովետական սպորտսմենները և հատկապես Իգոր Նովիկովը, որը հաղթելով իր 32 մրցակիցներին, նվաճում է բացարձակ առաջնություն։ Հաջող են հանդես գալիս նաև սովետական թիմի մյուս անդամները։ Կայմի վրա բարձրացվում է սովետական դրոշը, հնչում է մեր երկրի Պետական Հիմնը։

Հաջորդ օրը մրցումները տեղափոխվում են հրաձգարան։ Շվեդական և օտարերկրյա այլ թերթեր արդեն իրենց ուշադրության կենտրոնում են վերցնում սովետական թիմին, հատկապես, Իգոր Նովիկովին։ Հեռադիտակները ուղղված են 11-րդ համարի տակ հանդես եկող սպորտսմենի՝ Իգոր Նովիկովի վրա։ Ահա նա կրակում է։ Վաստակելով 980 միավոր, նա շարունակում է գլխավորել առաջնությունը։ Թիմային կարգով առջևում են սովետական հնգամարտիկները։

Մրցումների չորրորդ օրը սկսվեց 300 մետր ազատ ոճի լողով։

Ստոկհոլմում շատ քիչ մարդիկ էին մնացել, որ կասկածեին թե սովետական հնգամարտիկները կրհաղթեն, իսկ ամերիկացիներին կամ մոռացել էին, կամ մոռանալ էին ձևանում։ Հանդիսականները մեր երկրի սպորտսմեններից յուրաքանչյուրին ընդունում էին մեծ օվացիայով, ծափահարություններով։ Նրանք դարձել էին համարյա բոլորի սիրելիները։ Շվեդացիները սովորել էին նույնիսկ մերոնց անունները, որոնք մրցման ընթացքում լսում էին մի քիչ օտար հնչյուններով բացականչություններ՝ «Տատարինով, արա՛գ։ Տարասով, մի քիչ էլ՝ Իգո՜ր, Իգո՜ր»։

Կիսով չափ սուզված ջրի մեջ, համարյա առանց նայելու իր մրցակիցներին, Իգորը անցնում է տարածությունը և հասնում ֆինիշին։ Սրտի դողով նայում է նա ընկերոջը ու մի պահ հանգստանում։ Առաջինն է։ Դատավորը հայտարարում է արդյունքը։ Երեք րոպե 59,1 վայրկյան։ Բայց հուզումը նորից տիրում է նրան։ Դեռ լինը խմբեր կան մրցելու։ Ավելի լավ արդյունք ցույց տվող կգտնվի՞, թե ոչ։ Մեկը մյուսի հետևից հայտարարում են արդյունքները։ Ո՛չ։ Ոչ ոքի չի հաջողվում ավելի արագ լողալ։ Միայն Ֆինլանդիայի չեմպիոն Կ. Պակարինենին հաջողվում է մոտենալ այդ արդյունքին (3 րոպե 59,2)։

Ամփոփվեցին հնգօրյա միջազգային մրցումների արդյունքները, և հնչեց հաղթանակած երկրի՝ Սովետական Միության Հիմնը։ Բոլորը ոտքի կանգնեցին։ Հանդիսականները ծափերով ողջունում են մեր երկրի ներկայացուցիչներին։ Ահա հայտարարում են անհատապես հաղթողների անունները, և իրար ետևից դեպի բեմ են քայլում ոսկե, արծաթե և բրոնզե մեդալներ նվաճողները՝ Նովիկովը, Տարասովը և Տատարինովը։

1957 թվականի աշխարհի չեմպիոն է հռչակվում ՍՍՌՄ սպորտի վաստակավոր վարպետ, երևանցի Իգոր Նովիկովը։

ԳՐ. ՔԵՇԻՇՅԱՆ




**Բալկանյան թերակղզում կա մի չքնաղ երկիր. դա Բուլղարիան է։ Երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին այս գեղեցիկ երկիրը ևս ընկել էր գերմանական ֆաշիստների երկաթե կրնկի տակ։ Բուլղար ժողովրդի հետ միասին գերմանական օկուպացիայի ծանր լուծը կրում էին նաև տարիներ առաջ Բուլղարիայում ապաստան գտած հայերը։ Ֆաշիստները մի առանձին ատելությամբ էին լցված դեպի հայերը, որովհետև նրանց հայրենակիցները՝ Սովետական Հայաստանի քաջարի զավակները, հերոսաբար մարտնչում էին Հայրենական պատերազմի ռազմաճակատներում...**

**1942 թվականն էր, ամառ։ Պ. քաղաքի հայ պատանիները, չնայած պատերազմի ծանր պայմաններին, մեծ դժվարությունների ու զրկանքների գնով կարողացան Ռոդոպյան լեռների անտառածածկ լանջերին ճամբար կազմակերպել։ Երկու հարյուր հայ աղջիկներ ու տղաներ եկան այդտեղ հանգստանալու։ Բուլղարական ոստիկանությունը հետևում էր պատանի ճամբարականների ամեն մի քայլափոխին, կասկածելով, որ նրանք կարող են «կոմունիստական գործերով» զբաղվել։**

ԿԱՐՈ ՃԻՆԳՈՋՅԱՆ

Նկ. Մ. ՍՈՍՈՅԱՆԻ

Հուլիսյան երեկոն իր կապտավուն շղարշը փռեց Ռոդոպյան լեռների անտառապատ լանջերի վրա։ Զեփյուռը մեղմիկ օրորեց եղևնիների բարձր կատարները։ Անտառը անուշ սոսափեց և ապա մտավ քաղցր քուն։

Մոտակա անտառի ընդարձակ բացատում, լուսնի շողերի տակ սպիտակին էին տալիս փոքրիկ վրանները։ Ճամբարը խոր քնի մեջ էր։ Վրաններից մեկում դեռ առկայծում էր ճամփորդական լամպարը։ Համիկը իր ընկերուհիների հետ լամպի շուրջը բոլորած, ոսկեզույն մետաքսաթելով կարմիր կտորի վրա ինչ-որ բան էր ասեղնագործում։

Մուտքի մոտ նստել էր շիկահեր մի աղջիկ՝ ուշադրությունը դեպի դուրս լարած։

Հանկարծ վրանի դռնակը բացվեց, և նրա սև շրջանակում երևաց խոշոր աչքերով մի չարաճճի պատանի։ «Պահակը» վախից ճչաց, իսկ աղջիկները կայծակի արագությամբ կարմիր կտորը թաքցրին անկողինների տակ։

— Վա՛յ, վախկոտներ, վա՛յ։ Նապաստակի չափ էլ սիրտ չունեք,— ծիծաղեց պատանին։

— Ժիրա՜յրն է,— գրեթե միաբերան գոչեցին աղջիկները թեթևացած։

Պատանին կռանալով ներս մտավ։

— Հապա տեսնեմ ի՞նչ եք արել,— հարցրեց նա գործնական տոնով։

— Համբերիր մինչև վաղը,— պատասխանեց Համիկը,— իսկ Տիգրանին կասես, որ գրեթե պատրաստ է։

Թեև կես գիշերն անց էր, բայց Տիգրանի քունը էր տանում։ Ձեռքերը գլխատակին ծալած, նրա զուն հայացքը գամել էր վրանում հազիվ առկայծող լամպի բոցեղեն լեզվակին։ Ներսում լսվում էր չորացած պտերի վրա քնած ընկերների խաղաղ շնչառությունը։

Տիգրանի համար անչափ քաղցր էր երևակայության թևերով սլանալ հեռուները՝ Բալկաններից այն կողմ, Սև ծովից էլ այն կողմ, դեպի Արագածի լանջերը, դեպի չքնաղ Ծաղկաձոր։ Այնտեղ, հայրենիքում, պիոներական ճամբարում իր երջանիկ օրերն էր անցկացնում Տիգրանի հորեղբորորդին՝ Գուրգենը։ Ամեն անգամ կարդալով Գուրգենի վաղուց ուղարկած նամակը, Տիգրանը սաստիկ հուզվում էր, սիրտը լցվում անհուն կարոտով, և ամեն անգամ մտքով թռչում էր այնտեղ, հայրենիք և Գուրգենի հետ միասին անվերջ թափառում Ծաղկաձորի հեքիաթային անտառներում։ Իսկ նկա՞րը, որ Տիգրանը ստացել էր նույն նամակում։ Օ՜, այդ նկարը չէր հեռանում Տիգրանի մտքից։ Ահա նա՝ Գուրգենը, իր ջոկատի ուրախ տղաներով։ Նրանց թիկունքում սպիտակին են տալիս ճամբարի շինությունները։ Ավելի հեռու, գծագրվում են կախարդական անտառների մութ զանգվածները։ Պիոներների գլխավերևում ծածանվում է հայրենի դրոշը։ Հայրենիքի հարազատ դրոշը... Ինչե՜ր չէր տա Տիգրանը, միայն թե այդ նվիրական դրոշի հովանու տակ, թեկուզ մի քանի ժամով, ազատ ու լիաթոք շնչեր հայրենիքի զմրուխտ սարերի կենսատու օդը։

— Է՜հ, երանի՜ քեզ, իմ սիրելի Գուրգեն,— խուլ հառաչեց Տիգրանը։

Վրանում քնած տղաներից մեկի բարձր խռըմ-



փոքր սթափեցրեց նրան։ Նա կիսախավարի մեջ հայացքը պտտեցրեց մյուս ընկերների վրա։ Սամվելի ոտքերը դուրս էին ցցվել կարճ վերմակի տակից և ձգվել դեպի վրանի մուտքը։ Տիգրանը հանեց սպորտային բրդյա զգեստը և նրանով զգուշությամբ ծածկեց տղայի մրսած ոտքերը։ Այսպես լավ է, իսկ ինքը պինդ կփաթաթվի Ժիրայրին, կտաքանա «Հա՛, Ժիրայրը... տեսնես ինչո՞ւ է ուշանում։ Չլինի՞ հանկարծ մի բան պատահեց, հ՞րը», անհանգստացավ Տիգրանը, ապա մեկ էլ քնքշությամբ նայեց քնած ընկերներին և անձայն մտավ իր տեղը։ Բայց դեռ գլխատեղը չէր ուղղել, երբ վրանի փեշը շրշյունով բացվեց։ Սամվելի ոտների վրայով ճարպկորեն թռչելով, ներս ընկավ Ժիրայրը։

Ամեն ինչ կարգին է։ Աղջիկներն արդեն վերջացնում են,— շշնջաց նա ու ինքն էլ պառկեց Տիգրանի կողքին։

Արևելքը սկսեց շառագունել։

Շեփորի զիլ կանչը ճեղքեց առավոտյան անդորրը և ձորից-ձոր արձագանքելով գնաց հեռո՜ւ, հեռու։ Ճամբարը զարթնեց։ Պատանիները մեղուների նման դուրս թափվեցին վրաններից։ Այդ օրը ճամբարի վերջին օրն էր։ Ով ինչպես ցանկանար, այնպես էլ կանցկացներ օրը, միայն թե այդ պետք է կատարվեր ճամբարի ղեկավարի թույլտվությամբ։

Տիգրանի խուզարկու հայացքը շուտով գտավ աղջիկներին։ Նա հանգիստ մոտեցավ նրանց, ցածր փսփսաց.

— Քիչ հետո կգաք «Մասի աղբյուրի» մոտ։ Թույլտվություն ենք վերցրել, իբր գնում ենք մորի հավաքելու։

Նշանակված ժամին խիտ անտառի եզրին զլզլացող աղբյուրի մոտ հավաքվեցին տասից ավելի պատանիներ։ Նախ զննեցին չորս կողմը և, համոզվելով, որ իրենց հետևող չկա, զգույշ մտան անտառ ու կեռմաններով սկսեցին բարձրանալ սարն ի վեր...

Խումբը, որի առջևից քայլում էր Տիգրանը, գնալով մխրճվում էր անտառի խորքը։ Առավոտյան մառախուղը դանդաղ անհետանում էր ծառերի կանաչ կամարների տակ։ Անտառը շնչում էր խեժի սուր, բայց դուրեկան բուրմունքով։

Հանկարծ ջարդվող ճյուղերի ճարճատյուն լսվեց։ Ողջ ջոկատը սեղմվեց։

— Դադա՛ր կինի,— շշնջաց Ժիրայրը։

Հազիվ թե, լրջորեն նկատեց Սամվելը։ Նա ափը պահել էր ականջի մոտ և ուշի ուշով հետևում էր աղմուկին։

— Եվ իրոք, պատանիների լսողությանը հասավ մարդկային ոտնաձայների խուլ խշշոց, որ արագ հեռանում էր դեպի անտառի խորքը։

«Մեզ հետևում են», անցավ Տիգրանի մտքով։ Բայց նա ոչ մի ծպտուն չհանեց։

Երբ խշշոցը հեռվում դադարեց, և տագնապը տեղի տվեց պատանիների աշխուժությանը, խումբը կրկին ճանապարհ ընկավ։

Վերջապես հոգնած պատանիները դուրս եկան արևի շողերով ողողված մի գողտրիկ բացատ։ Կանաչ եղևնիները շուրջպար էին բռնել երփներանգ ծաղիկներով պճնված մարգագետնի շուրջը։

Ահա մեր Ծաղկաձո՜րը,— ոգևորված բացականչեց Տիգրանը և առաջինը գլուխկոնծի տվեց խոտերի մեջ։ Բացատը լցվեց ուրախ պատանիների ճիչ ու կանչով։

Շուտով գործի դրվեցին փոքրիկ բահերն ու կացինները։ Եվ ահա ոգևորված պատանիների գլխավերևում կանգնեց ճամբարային դրոշի երկար ձողը։

— Շարվե՛ք,— լսվեց Տիգրանի ձայնը։ Պատանիները իրար խառնվեցին, բայց շուտով ամեն մեկը շարքում գտավ իր տեղը։

— Ինձ թվում է,— հուզված սկսեց Տիգրանը,— դրոշը բարձրացնելու պատիվը պիտի տալ աղջիկներին։ Չէ՞ որ դրոշը նրանց ձեռքի շնորհքն է։ Դուք ի՞նչ կարծիքի եք։

— Հասմի՛կը, Հասմի՛կը,— միաբերան կանչեցին բոլորը։

Աղջիկը հուզված մոտեցավ ձողին, շորի տակից դուրս բերեց ասեղնագործված կարմիր դրոշը և ամրացրեց ձողից կախ ընկած պարանին։ Պատանիները չհամբերելով, խռնվեցին դրոշի շուրջը։ Նրանք հափշտակված շոշափում էին ալ մետաքսը, քնքշությամբ բռնում եզրերին։ Ահա թե ինչպիսի՜ն է եղել հայրենիքի դրոշը։ Տիգրանի նշանով ուռաների ու ծափերի տարափի տակ փոքրիկ դրոշը սկսեց դանդաղ վեր խոյանալ։ Երկու տասնյակ խանդավառ աչքեր հետևում էին նրա հանդիսավոր վերելքին։

Հանկարծ բացատում որոտաց մի հնչեղ ձայն։

— Չշարժվե՛լ։

Պատանիները սարսափից քարացան։ Հասմիկի ձեռքը դողաց, դրոշը տեղ չհասած, կանգնեց։

Տիրեց սպառնալի լռություն։ Ծառերի արանքից դուրս թափվեցին զինված մարդիկ։ Առաջ եկավ արևառ դեմքով, խոժոռադեմ մի մարդ։ Հաստատ քայլերով մոտեցավ ձողին և արագ իջեցրեց դրոշը։ Հանկարծ նրա աչքերն ընկան դրոշի վրա ասեղնագործված նշանները։

— Այ քեզ բա՜ն,— խիստ զարմացած խոսեց նա,— Ռոդոպյան լանջերին հայկական դրո՞շ: Տղե՛րք,— դիմեց նա յուրայիններին, եկեք, տեսեք, ինչպիսի՜ ծաղիկ է բուսել մեր լեռներում:

— Կորանք,— շշնջաց Միրայրը Սահակի ականջին:

— Կ-կ-կսպանեն,— դժվարությամբ կմկմաց Սահակը: Ահից նրա կոկորդը չորացել էր, իսկ սարսափով լի հայացքը չէր պոկվում կողքին կանգնած անծանոթ մարդու կեռ դաշույնից:

— Շարվե՜ք,— կրկին լսվեց հրամանատարի ազդու ձայնը:

Արձագանքը դեռ չէր լռել, երբ պատանիների դեմ ու դեմ կանգնեց զինված մարդկանց ահազդու շարքը: Հրացաններն ու ավտոմատները սպառնագին շողում էին սառը, մետաղյա փայլով: Ահա, ուր որ է, կլսվեն կրակոցներ և… վերջ:

Բայց համազարկն ուշանում էր:

— Հապա, աղջիկս,— բոլորի համար անսպասելի՝ հրամանատարը բուլղարերեն դիմեց դեռևս ուշքի չեկած Համիկին,— պարտքդ կատարիր մինչև վերջ: Դե՛, դե՛, ավելի համարձակ:

Համիկը նախ երկմտեց, բայց ինչ-որ աներևույթ ուժ նրան մղեց վճռականության: Նա կտրուկ շրջվեց և արագ-արագ դրոշը բարձրացրեց մինչև ձողի ծայրը:

— Смърт на фашизма, свобода на народа!* ահեղ կանչից թնդաց բացատը:

* «Մահ ֆաշիզմին, ազատություն ժողովրդին»:

Ի՞նչ, ինչպե՞ս թե: Պատանիները չէին հավատում իրենց լսողությանը: Նրանք ապշած միմյանց էին նայում և չէին հասկանում, թե ինչ է կատարվում: Երա՞զ էր սա, թե իրականություն: Ուրեմն սրանք ֆաշիստներ չէի՞ն:

Իսկ եթե այս բոլորը մի անողոք խա՛ղ էր…

Բայց ինչո՞ւ էր հրամանատարի դեմքից սառույցը հետզհետե հալչում, ինչո՞ւ էին կնճիռները պարզվում: Եվ ահա թավ հոնքերի տակից պատանիներին են նայում մի զույգ գորովալից աչքեր:

Հրամանատարը մոտեցավ տարակուսանքի մեջ ընկած պատանիներին և այս անգամ բարեկամական տոնով, հանգիստ ասաց.

— Հիմա ինչքան կուզեք, գլուխկոնծի տվեք, թռվռացեք: Այստեղ ազատ տերիտորիա է, դուք ձեզ զգացեք ինչպես ձեր հայրենիքում: Մեր տղերքը բացատը կպաշտպանեն չար աչքերից, իսկ դուք՝ ո՛չ որի ոչ մի խոսք, ոչ մի ակնարկ: Պա՞րզ է…

Հրամանատարը մեկ էլ երկար նայեց դրոշին, ապա նշան արեց ընկերներին, ու պարտիզանների խումբը, նույնպիսի արագությամբ, ինչպես հայտնվել էր, անհետացավ ծառերի արանքում:

Բացատը կրկին լցվեց աշխույժ պատանիների կենսախինդ աղմուկով: Նրանց գլխավերևում, անտառային զեփյուռից շոյված՝ ուրախ խայտում էր Սովետական Հայաստանի ալ դրոշը:



# Անվանի՝ վարպետը

ՀՈԲՈՍ ԱՊԵՐ

— Վա՜յ ինձ, վա՜յ ինձ, էս ի՞նչ տեղ է,
Ցրտերն ընկան, տեղս նեղ է,—
Փնթփնթում է բրդոտ ծեր
Ու որոշում տուն կառուցել։

Առանց փորձի
Անցավ գործի,
Լիզեց թաթը,
Շարեց պատը։

Բայց ծնկաչափ դեռ չշարած՝
Փուլ է գալիս պատը հանկարծ.
Ու վրդովված արջը նորից
Մեծ քարեր է բերում ձորից։

Բայց, արի տես,
Որ Թարմի պես,



Չի հարմարվում
Դրած քարը,
Փուլ է գալիս
Նորից շարը,

Քիչ է մնում, որ անճոռնի
Արջ ապերին տակով անի։
Մի փայտահատ նրան տեսնում,
Մոտ է գալիս, այսպես ասում.

— Առանց ցեխի,
Առանց կրի,
Պատ չի շարվի,
Ա՛յ արջ բեռի

Տուն չես շինի այսպես երբեք,
Մեծ ուժի հետ խելք էլ է պետք։




Խ. ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ

Իմ անունը Գևորգ է, իսկ մայրիկս ու տատիկս ինձ ասում են «Բոբո ջան»։

Մի անգամ մորաքրոջ տանից տատիկիս հետ տուն էինք գնում։

Տատիկս ասաց.

— Բոբո ջան, դու այստեղ կանգնիր, ես մտնեմ խանութ։

Ես կանգնեցի, տատիկը գրնաց, հետո մի մորաքույր եկավ ու ասաց.

— Ջանիկս, ինչո՞ւ ես կանգնել։

Ես ասացի.

— Տատիկիս եմ սպասում։

Հետո մի շատ մեծ մեքենա եկավ։ Փողոցով վազում էր ու ձյուները հավաքում, քթին մի շատ մեծ գդալ էր կապած։ Բոլոր քեռիներն ու մորաքույրները կանգնեցին մայթի վրա ու մեքենային էին նայում, իսկ մեքենան գռգռում էր, դրռդրռում էր ու ձյուները հավաքում։

Ես նայում էի, իսկ մի քեռի ասաց.

— Պստիկ, ատքի տակ մի՛ ընկնի։

Իսկ մի տատիկ էլ ասաց.

— Վա՜յ, վա՜յ, խեղճ երեխին ճխլեցին։

Անծանոթ տատիկն ինձ գրրկեց ու տարավ դրեց հեռու՝ պատի տակ։

Հանկարծ ինձ մոտ վազեց մի շուն, ես վախեցա ու նրան ասացի.

— Ինձ մի կծի՛, մի կծի՛։

Իսկ նա ասաց.

— Հա՛ֆ։

Ես վախեցա ու փախա։ Փախա՜, փախա՜, փախա՜... մի փոքրիկ փողոց։ Այդտեղ ոչ շուն

կար, ոչ՝ ավտոմեքենա։ Երկու տղա ձյունից սար էին սարքում։ Մի տղան ինձ ասաց.

— Է՜յ, դու սղղալ սիրո՞ւմ ես, արի սար սարքենք։

Շատ երկար սար սարքեցինք։ Ոտքերս մրսեցին. Ռուբիկի ու Մարտինի ոտքերն էլ։ Ռուբիկն ասաց.

— Էլ բավական է, մրսեցինք, գնանք տուն։

Ես տխրեցի։

— Հիմա ո՞նց գնամ տուն։

Ռուբիկն ասաց.

— Ձեր տունը որտե՞ղ է։

Ես ասացի.

— Երևանում։

Նա ասաց.

— Չէ՛, չէ, որտե՞ղ է։

Իսկ Մարտինն ասաց.

— Էլ ի՞նչ ես հարցնում, պարզ է, Գևորգը կորել է։

Տես է՜, ո՞նց հասկացավ, ես էլ իսկույն հասկացա, որ կորել եմ։

Ռուբիկն ասաց.

— Բա հիմա ի՞նչ անենք։

Մոտիկ բակից մի մորաքույր կանչեց.

— Մարտի՜ն, Մարտի՜ն։

— Ի՜նչ։

— Եկ տուն, բավական է։

Մարտինն ասաց.

— Մայրի՛կ, Գևորգը կորել է։

— Ի՞նչ Գևորգ։

— Դե մեր Գևորգն է՛լի, էն որ սար էինք սարքում։

Այդ ժամանակ մորաքույրը բակից դուրս եկավ, գրկեց ինձ ու տուն տարավ։ Մարտինն էլ եկավ, իսկ Ռուբիկն իրենց տուն գնաց։

Մարտինենց տանը մի լավ տատիկ կար, մի լավ պապիկ կար։ Մեկ էլ՝ շատ կոնֆետ, Մարտինի մայրիկն ինձ շատ կոնֆետ տվեց, իսկ տատիկն ասաց.

— Վա՜յ, քոռանամ ես, էս ո՞ւմ երեխեն է։

Պապիկը գիրք էր կարդում, քթին ակնոց կար։ Ակնոցը հանեց ու ասաց.

— Անունդ ի՞նչ է։

— Համ Գևորգ, համ էլ «Բոբո ջան»։



Հետո նա հայրիկիս, մայրիկիս ու տատիկիս անունն էլ իմացավ։ Հետո ասաց.

— Ա՜յ, քաջ տղա ես, իսկ ձեր փողոցը գիտե՞ս։

Ես ասացի։

— Մեր փողոցում դպրոց կա։

Հետո Մարտինի պապիկը հեռախոսի անիվը ճռճռացրեց ու հեռախոսի փողի մեջ ասաց.

— Ալլո՛, մեր տանը մի երեխա կա, կորել է։ Գևորգ, Գևորգ, երեք-չորս տարեկան։ Շատ լավ։

Հետո Մարտինի մայրիկն ինձ ու Մարտինին գաթա տվեց, իսկ պապիկն ասաց.

— Գևորգ ջան, դե գնանք։

Գնացի՜նք, գնացի՜նք, հասանք մի մեծ տուն։ Այդ մեծ տան մեջ շատ միլիցիոներ կար։ Միլիցիոներ քեռիները փայլուն կոճակներ ունեին և պատյանով ատրճանակներ, բայց ես չվախեցա։ Մի միլիցիոներ քեռի ասաց.

— Հո դու չար չե՞ս։

Ես ասացի.

— Չէ, ես չար չեմ, Նազիկն է չար։

Պապիկն ինձ շոյեց ու գնաց։

Միլիցիոներ քեռին ինձ տարավ մի ուրիշ դահլիճ։ Այնտեղ փայտե ձի կար, կապույտ-կարմիր գնդակներ, նկարներ, երկար սեղան, գիրք, ծաղիկներ... Իսկ անկյունում մի տղա աթոռին նստած՝ լաց էր լինում։

Միլիցիոներ քեռին ասաց.

— Ա՛յ, ա՛յ, ա՛յ, Հարութիկ, բա ամոթ չի՞, մեծ տղա ես, լաց ես լինում։ Ահա Գևորգն էլ եկավ, միասին խաղացեք։

Հարութիկն ասաց.

— Ես մամայիս եմ ուզում...

Միլիցիոներ քեռին ասաց.

— Հիմա քո մաման կգա։

Միլիցիոներ քեռին գնաց։ Ես Հարութիկին ասացի.

— Դու էլ ես կորե՞լ։

Նա ասաց.

— Կորել եմ։

— Ես էլ եմ կորել, արի խաղանք։

Շա՜տ, շա՜տ, շա՜տ խաղացինք։ Մեկ էլ դուռը բացվեց, տեսնեմ՝ հայրիկս է միլիցիոներ քեռու հետ։ Ես հայրիկիս մոտ վազեցի։

Հայրիկս ինձ գրկեց ու միլիցիոներ քեռուն ասաց.

— Գիտեք, մայրս...

Միլիցիոներ քեռին ասաց.

— Հասկանալի է, պետք է ավելի զգույշ լինել, քաղաքացի։

Հայրիկս ասաց.

— Անչափ շնորհակալ եմ, ներողություն։

Միլիցիոներ քեռին ասաց.

— Իսկ ձեր Գևորգը շատ քաջ տղա է։

Ես, չգիտեմ ինչու, հանկարծ ուզեցի լաց լինել, բայց քունս տարավ, հայրիկիս գրկում քնեցի։

Մեկ էլ աչքերս բացեցի, արդեն մեր տանն էի, իսկ տատիկս ասում էր.

— Բոբո՜ ջան, ազի՜զ ջան։

## ՅՈԹ ՏԱՐԻ ՔՆԱԾ ՄԻՆԻՍՏՐԸ

Բոպալհանդ Լոդհան Հնդկաստանի Յոդպուր նահանգի հասարակական աշխատանքների մինիստրն էր։ Իմանալով, որ իրեն ինչ-որ մշուշապատ մեղադրանքների հիման վրա հանել են աշխատանքից, նա պահանջեց հատուկ քննություն կատարել։ Սակայն այդ քննությունը ձըգձըգվեց։ Լոդհան գտնվում էր մըշտական հոգեկան լարված դրության մեջ։ Ամիս ու կես հետո նա ընկավ խոր լեթարգիայի (քնափության) մեջ։

Լոդհան մեռածի պես պառկած մնաց յոթ տարի՝ 1944-ից մինչև 1951 թվականը։ Դա բժշկության պատմության մեջ եզակի դեպք է։

Լոդհային ջրալի կերակուր էին տալիս քթանցքների մեջ անցկացրած ռետինե խողովակների միջով։ Ամեն օր նրան վիտամինների ներարկում էին կատարում, շփում էին մկանները և յոթ տարի անընդհատ, գիշեր ու ցերեկ կես ժամը մեկ անգամ փոխում էին մարմնի դիրքը, որպեսզի արյան շրջանառությունը չարգելակվեր։ Լեթարգիայի չորրորդ տարում Լոդհան թոքերի բորբոքում ստացավ, բայց նրան բուժեցին պենիցիլինով։ 1951 թվականին նա հիվանդացավ մալարիայով։ Տաքությունը հասավ 40°-ի, իսկ հետո խիստ ընկավ։ Այդ օրը նա սկսեց շարժել նախ ձեռքերի, ապա ոտքերի մատները։ Մի քանի օր անց, նա յոթ տարվա ընթացքում առաջին անգամ բացեց աչքերը, մի ամիս հետո սկսեց ինքնուրույն ուտել։ Բայց Լոդհայի տեսողությունը վերականգնվեց միայն մի քանի ամիս հետո։

Հիվանդը լրիվ գիտակցության եկավ միայն մի տարի անց։

Այժմ Լոդհան 75 տարեկան է։ Հիվանդությունը ոչ մի հետք չի թողել՝ նա լրիվ առողջ է և՛ հոգեպես, և՛ ֆիզիկապես։

# Լինենք

## ԱՅՏ ԵՎ ԱՐՄՈՒՆՔ

«Միևնույն չէ՞, թե մարդ ինչպես է ուտում», հաճախ մտածում են շատերը։

Իհարկե, ո՛չ։ Կան սեղանի շուրջը իրեն պահելու կանոններ, որոնք, ինչպես և վարքի մյուս կանոնները, հնարովի չեն։ Դրանք ծագել են սեղանի մոտ կողքդ նստածի նկատմամբ ունեցած հարգանքից։ Հապա փորձիր դանակն ու պատառաքաղը բռնել ոչ թե



մատներով, ինչպես ընդունված է, այլ վերցրու ամբողջ բռունցքիդ մեջ ու սկսիր միսը կտրատել։ Արմունկներդ անպայման կտարածվեն ու վեր կբարձրանան։ Բայց չէ՞ որ այդ դեպքում վտանգի տակ կընկնի հարևանիդ այտը։

Իսկ որքա՜ն տհաճ է կողքիդ նստածի համար, երբ դու արմունկներդ հենում ես սեղանին։ Չէ՞ որ դու զբաղեցնում ես այն տեղը, ուր պետք է լիներ կողքինիդ ափսեն։

Կամ, ասենք, ինչո՞ւ համար շաքարը պետք է վերցնել բռնիչով կամ ուղղակի մատներով, և ոչ թե թեյի գդալով։ Շատ պարզ։ Չէ՞ որ սեղան նստելուց առաջ դու լվացել էիր ձեռքերդ։ Բայց գդալը բերանդ էիր առել, և դժվար թե որևէ մեկին հաճելի լինի, որ այդ գդալը մտնի ընդհանուր շաքարամանի մեջ։

1. Մի՛ խոսիր, երբ բերանումդ բան կա։

2. Ուտելիս աշխատիր աղմուկ չհանել, մի՛ փչիր տաք կերակրի վրա, սեղանի պարագաների հետ մի՛ խաղա։

3. Միսը կտրատիր փոքր կըտորներով։ Երբ մի կտորը կուտես, կտրիր մյուսը։

4. Գդալով մի՛ կեր այն, ինչ կարելի է ուտել պատառաքաղով։

5. Դանակը բռնիր աջ ձեռքով, իսկ պատառաքաղը՝ ձախով, և ձեռքից-ձեռք մի՛ փոխանցիր, մինչև չվերջացնես։

6. Կոմպոտի կորիզները կամ ոսկորի կտորները մի՛ թքիր ափսեի մեջ, այլ գդալը մոտ տար բերանիդ և նրանով վերցրու։

7. Ուտելուց հետո դանակն ու պատառաքաղը դիր ափսեի մեջ։

8. Թեյ խմելիս գդալը բաժակի մեջ մի՛ թող, այլ դիր ափսեին։

9. Սեղանի առաջ ուղիղ նստիր։

10. Երբ որևէ կերակուր չես ուզում ուտել, մի՛ ասա, թե դա քեզ դուր չի գալիս, կամ

# ճաշաժամերի

## ԱԽՈՐԺԱԿՆ ՈՒՏԵԼԻՍ Է ԳԱԼԻՍ

Ֆրանսիական առածն ասում է. «Ախորժակն ուտելիս է գալիս»: Ինչպես ժողովրդական առածների մեծ մասը, այս առածը ևս հիմնըված է կյանքի փորձի վրա. համեղ կերակրի հոտն ու տեսքը իսկապես որ ախորժակ են գրգռում: Կերակրի ախորժելի տեսքը ներգործում է ստամոքսի վրա, որից առաջանում է հատուկ հյութ, որը նպաստում է լավ մարսելուն: Հենց այդ հյութն էլ ախորժակ է գըրգըռում:

Եվ որքան ախորժակով է մարդ ուտում, այնքան լավ է կատարվում մարսողությունը:

Այստեղից էլ առաջ են եկել մի շարք կանոններ:

Ինչո՞ւ համար, ասենք, կոտլետ ուտելիս այն միանգամից չեն կտրատում: Որովհետև, նախ կտրատված կոտլետը շուտ է սառչում, բացի այդ, նրա տեսքը այնքան էլ ախորժելի չէ:

Մի ուրիշ դեպք: Պատկերացրու, որ դու մեծ ախորժակով ինչ-որ բան ես ուտում, բայց մյուսներն արդեն վերջացրել են ու վեր կացել: Դու կամ պիտի կիսատ թողնես, կամ շտապ-շտապ վերջացնես: Իսկ հաճելի՞ է արդյոք դա: Իհարկե, ոչ: Եվ որպեսզի դու էլ որևէ մեկին նման դրության մեջ չգցես, սեղանից վեր կաց այն ժամանակ, երբ բոլորն արդեն վերջացրել են ուտելը:



կուշտ ես, ուղղակի ասա՝ «Շնորհակալ եմ, ես չեմ ուզում»:

**11.** Հացը վերցրու ոչ թե պատառաքաղով, այլ՝ ձեռքով:

**12.** Ընդհանուր ամանից պատառը վերցրու առանց ընտրելու:

**13.** Ջուկը, սոլման, կոտլետը, ձվածեղը դանակով կըտրելու կարիք չկա, քանի որ դրանք պատառաքաղով էլ են հեշտությամբ կտրվում:

**14.** Ուտելիս չի կարելի կարդալ:

**15.** Թռչունի միս ուտելիս կարելի է ձեռքով բռնել ոսկորից և ուտել:

**16.** Երբեք վատ մի՛ խոսիր այն կերակրի մասին, որն ուտում են քո սեղանակիցները: Դրանով դու նրանց ախորժակը կփչացնես:

**17.** Մի՛ հարցնի, թե ինչից է պատրաստված այս կամ այն կերակուրը: Սեղանի առաջ ընդունված չէ հիշել խոհանոցի մասին:

**18.** Եթե քեզ որևէ բան է հարկավոր, մի՛ ձգվիր ամբողջ սեղանի վրա, այլ խնդրիր, որ փոխանցեն:




# Արտասահմանյան հումոր

## ՓՈՂՈՑԱՅԻՆ ԳՐԱԳԻՐԸ

(Հնդկական)

*Մի մարդ ուզում էր նամակ ուղարկել իր բարեկամին և գընաց փողոցային գրագրի մոտ։*

*— Ինձ համար մի նամակ գրիր, — ասաց նրան։*

*— Չեմ կարող, — պատասխանեց գրագիրը, — ոտքերս ցավում են։*

*— Դու խո ոտքերով չես գըրում, ձեռքերով պիտի գրես, — նորից խոսեց պատվիրատուն։*

*— Ճիշտ է։ Բայց ամեն անգամ, երբ ես նամակ եմ գրում, մարդ են ուղարկում իմ ետևից, որպեսզի ինքս գնամ ու կարդամ, — բացատրեց գրագիրը, — ոչ ոք չի կարող կարդալ իմ ձեռագիրը։*

## ՎԱՐՊԵՏԸ

(Անգլիական)

*— Ջոն, ես քանդեցի ու նորից հավաքեցի ազդիչ ժամացույցը։*

*— Ինչո՞ւ։*

*— Որպեսզի նայեմ, թե ինչպես է կառուցված։*

*— Բայց դու մասերը չկորցրե՞ր։*

*— Ընդհակառակը, 12 հատ էլ ավելացավ։*

## ՆԱՄԱԿԸ

(Անգլիական)

*Մի փոքր աղջիկ եռանդով ճըզմըզում էր թղթի վրա։*

*— Ի՞նչ ես անում, — հարցըրեց մայրը։*

*— Ջեննիին նամակ եմ գրում։*

*— Բայց դու գրել չգիտես։*

*— Դա ոչինչ, ախր Ջեննին էլ կարդալ չգիտե։*





## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝ Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ*

## Հ. ԹՈՒՄԱՆՅԱՆԻ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Օգտվելով սկզբնատառերից, լրացրեք բաց վանդակները այնպես, որ ստացվեն Հ. Թումանյանի հանրածանոթ ստեղծագործությունների անունները:

Առաջարկ՝ Վ. ԳԱՍՊԱՐՅԱՆԻ



## ՔԱՆԻ՞ ՏԱՐԵԿԱՆ Է ԳԱԳԻԿԸ

Երբ Գագիկի հայրը 31 տարեկան էր, Գագիկը 8 տարեկան էր: Այժմ հայրը որդուց երկու անգամ մեծ է: Որքա՞ն է Գագիկի տարիքը:

## „ՊՈԼԿԱ“ ՊԱՐԸ

Ձեզնից շատերը, հավանաբար, կարող են «պոլկա» պարել: Իսկ գիտե՞ք, թե ո՛ր երկիրն է այդ պարի հայրենիքը և որտեղից է նա ստացել իր անվանումը: Պատասխանելիս չշտապեք:


Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝** ԱՍՍՏՐՅԱՆ Օ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՖՅԱՆ Պ., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.:

„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41.
*Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06։*

*ՎՖ 02458. Պատվեր 159. Տիրաժ 6500։ Տպագրական 4,5 մամուլ։ Ստորագրված է տպագրության 10 III 1958 թ. ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91։*

Գինը 2 ռ.

## ԹՎԱԲԱՆԱԿԱՆ ՉՈՐՍ ԳՈՐԾՈՂՈՒԹՅՈՒՆ

Ձեր առաջ դասավորված թվերի 7 շարք կա։

1 2 3 =1
1 2 3 4 =1
1 2 3 4 5 =1
1 2 3 4 5 6 =1
1 2 3 4 5 6 7 =1
1 2 3 4 5 6 7 8 =1
1 2 3 4 5 6 7 8 9 =1

Չխախտելով թվերի դասավորությունը, նրանց միջև դրեք թվաբանական գործողությունների նշաններ այնպես, որ այդ գործողությունները կատարելուց հետո բոլոր շարքերում էլ ստացվի 1։ Կարելի է փակագծեր օգտագործել կամ իրար կողքի գտնվող երկու թվերը համարել երկնիշ թիվ։




Գագիկի շախմատի տախտակը կտոր-կտոր էր եղել։ Նա հավաքեց 14 կտորները և երկար չարչարվելուց հետո, ճշտորեն դասավորեց դրանք։ Դուք էլ փորձեք ստվարաթղթից կտրատել այսպիսի կտորներ և իրար միացնելով, ստանալ շախմատի տախտակ։



## Մութ սենյակում





Գագիկը մտավ մութ սենյակը կոշիկներն ու գուլպաները վերցնելու։ Սենյակում քնած էր քույրիկը։ Նրան չարթնացնելու համար Գագիկը լույսը չվառեց. նա լավ գիտեր, թե որտեղ են դրված իր 3 զույգ տարբեր ձևի կոշիկները և 12 զույգ սև ու դարչնագույն գուլպաները։ Բայց Գագիկը տարակուսեց, երբ տեսավ, որ բոլոր 6 կոշիկներն ու 24 գուլպաները իրար են խառնված։ Կանգնել էր նա մութ սենյակում ու մտածում էր, թե հնարավորին չափ որքան քիչ կոշիկ ու գուլպա վերցնի, որպեսզի դրանց մեջ լինի միևնույն ձևի մի զույգ կոշիկ և նույն գույնի մի զույգ գուլպա։

### ԿԱՏԱԿ

Սիբիրի քարտեզը դիտելիս Գագիկը գտավ մի գետ, նրա անվան տառերը տեղափոխեց և, նա անմիջապես հայտնվեց Աֆրիկայում, ու գետի ջրերը հոսեցին դեպի Ատլանտյան օվկիանոսը։

Ո՞րն է այդ գետը։

### ՓՈՐՁԵ՛Ք

Մատիտն առանց թղթից կտրելու՝ ստանալ այսպիսի պատկեր։ Մատիտը մի գծի





վրայով երկրորդ անգամ չի կարելի տանել։

Առաջարկ՝ ԱՎԻԿ ԻՍԱՀԱԿՅԱՆԻ

## Պատասխանում ենք

### «ՊԻՈՆԵՐ» № 2

ԿՐՈՍՎՈՐԴ — *ՈՒՂՂԱՀԱՅԱՑ.— 1. Դրեզդեն, 2. Ջութակ, 3. երկաթ, 4. Միչուրին, 7. Մաշտոց. 9. «Վարդանանք», 10: Պետրոսյան, 12. Լիբանան, 13. բառարան, 18. «Մարմար», 19. Մելբուրն, 21. Կոտոյան, 24. Երմակ, 25. Արագի։*

*ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ — 5. Էրենբուրգ, .6 Մարգարիտ, 8. Բաղրամյան, 11. սեղան, 14. Թենիս, 15. Միկոյան, 16. Սարյան, 17. Խարկով, 20. Վաչագան. 22. Դեսնա, 23. քանոն, 26. «Արծվաբերդ», 27. Արտավազդ, 28. կազմարար։*

### «ՄԱՐԱԼՆ» ՈՒ «ՋԵՅՐԱՆԸ»

*«Ջեյրանը» քիչ էր կերել, որովհետև նրա պոչը խուզված էր, և նա չէր կարողանում իրեն խանգարող ճանճերին քշել ու հանգիստ ուտել։*

### ԱՊԱ ՓՈՐՁԵՔ—



# ՊԱՐԾԵՆԿՈՏԸ ԿՈՏՐԵՑ ՈՏԸ



*Ի՞նչ եք կանգնել, խելոքնե՛ր,*
*Սպասո՞ւմ եք, ա՛յ, ա՛յ, ա՛յ...*
*Այս տեսեք, վախկոտնե՛ր,*
*Ո՞նց են նստում տրամվայ։*



*Մեկ էլ, շը՛մփ, ցած փռվեց.*
*Ա՜խ, այդպես էլ ծախորդ օ՞ր...*
*Ձեռք ու ոտքը ջարդվեց,*
*Քիթը դարձավ պամիդոր։*



*Նայե՛ք դուք այս հերոսին,*
*Ուռած քթին, երեսին...*
*Նա տուն գնաց զույգ ոտքով,*
*Դպրոց եկավ հենակով։*

Ա. ՄԿՐՏՉՅԱՆ

Նկ. Ռ. ՍՈՒԹԻԱՇՅԱՆԻ